1916 № 14.—*Մարտի 27* ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 *ռուբլի*, կէս տարուան 2 *ր.* 50 *կ.*։ *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝* տարեկան 3 *ր.*, կէս տարուան 2 *ր.*։ *Արտասահման՝* տարեկան 5 *ր.*, կէս տարուան 3 *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտատրադեան հրապար.* № 7. Հեռախօս № 29.

*Պոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбавоберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* 10 *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*

*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





ԲԱՐԵՐԱՐ ԵՍԱՅԻ-ԲԷԳ
**ԹԻՒԻՆԻԲԷԳԵԱՆՑ**
† *23 յուլիսի 1915 թ.*

## Համաշխարհային պատերազմը

### *ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ*

Կովկասեան ճակատի *ռազմական գործողութիւններն այս շաբաթ առանձնապէս կենդանի էին ծովամերձ շըրջանում։ Լազիստանը գրաւելուց յետոյ՝ ռուսները Պոնտական լեռնադանդուածի վրայով, որ տեղ-տեղ* 10,000 *ոտնաչափ բարձրութեան է հասնում և ծածկուած է ըլպըրծին ձիւնի հաստ շերտով, դանդաղօրէն առաջ են գընում։ Թիւրքերը Պոլսից օգնական զօրք ստանալով իրենց ուժերը հասցրել են մօտ մի կորպուսի և յամառ դիմադրութիւն են ցոյց տալիս ռուսներին, օգտուելով Պոնտական լեռնաշխարհի բնական ամրութիւններից։ Այս գծի կռիւները բարդանում են ծովային գործողութիւններով։ Ռուսաց Սև-ծովեան նաւատորմիղը շարունակ թևից և թիկունքից հարուածում է թշնամու ձախ թևին և դիւրացնում մերոնց առաջխաղացութիւնը։ Միւս կողմից «Բրեսլաուն» է հանդէս գալիս և օգնում Թիւրքերին հակայարձակումներ գործելու ռուսների աջ թևի վրայ։ Վերջին կռիւների ընթացքում ռուսները գրաւել են այս շրջանում*

մի քանի գիւղ և գերել 10—15 սպայ մօտ 500 ասկեարի հետ միասին։

Երզնկայի գծի վրայ տաք կռիւներ կան միայն աջ թևի վրայ, այսինքն Ճորոխի ակունքի մօտերքը։ Ռուսները յամառօրէն ձգտում են դէպի Բաբերդ, իսկ թիւրքերն էլ համապատասխան դիմադրութիւն են ցոյց տալիս։ Վերջին օրերի կռիւներում մերոնք թշնամու զօրքերից երեք վաշտ են գերել. ըստ մասնաւոր տեղեկութիւնների Բաբերդի գրաւումը մօտիկ ապագայի խնդիր է։

Հարաւային գծերից այս շաբաթ ուշադրութիւն էր գրաւում Մշոյ շրջանը։ Ռուսները շարժւում են այստեղ երկու ուղղութեամբ. նրանց աջ թևը դիմում է դէպի հիւսիս-արևմուտք և գրաւում մեր հռչակաւոր Սուրբ Կարապետը, որով Խարբերդի ճանապարհը կտրւում և թշնամին շպրտւում է դէպի Կարին-Երզնկա գիծը։ Եթէ մերոնք այստեղ փոքր ինչ արագ շարժուեն՝ կարող են այդ նահանջող զօրքը ծուղակը ձգել ու գերել։ Գալով ձախ թևին՝ նա տարածւում է հարաւային և հարաւ-արևմտեան ուղղութեամբ։ Այստեղ նրանք մտել են Բաթման-սուի հովիտը և գրաւել Մահրուբանջ գիւղը, որ գտնւում է Մշից 40 վերստ հարաւ։ Այսպիսով ռուսները մտնում են Սասնոյ շրջանը... Շուտով այս թևի և Բաղէշից Սղերդ շարժուող ռուսական զօրքերի միջև անմիջական կապ կստեղծուի։ Առաջիկայ կարևոր գործողութիւնները պէտք է սպասել այս թևի վրայ։ Մինչև Մոսուլից և Տիգրանակերտից առաջ շարժուող տաճկական զօրքերը Տիգրիսի հովտում չչափեն իրենց ուժերը ռուսների հետ՝ Տաճկաստանը Փոքր Ասիայում իրեն պարտուած չէ յայտարարելու։

Կովկասեան ճակատի վրայ այս շաբաթ տեղի ունեցաւ մի չարագործութիւն, որ խորին վրդովմունք առաջ բերեց ամբողջ քաղաքակիրթ մարդկութեան մէջ. Սև ծովում թիւրք-գերմանական մի սուզանաւ խորտակեց ֆրանսական «Պորտուգալ» շոգենաւը, որ ռուսական Կարմիր Խաչի համար յածող հիւանդանոցի դեր էր կատարում։ Չնայած որ համաձայն 1907 թուի Հաագայի դաշնադրութեան այդ նաւի մասին ժամանակին պաշտօնապէս յայտնուել է թշնամիներին և նաւը ներկուել սպիտակ գոյնով, կարմիր խաչանիշերով՝ թշնամու սուզանաւը, ամսոյս 17-ին Օֆ նաւահանգստից ոչ հեռու քառասուն սաժէն տարածութիւնից ական է բաց թողնում նրա դէմ։ Հիւանդանոց-նաւը մի րոպէում խորտակւում է, իր հետ տանելով 93 մարդկային զոհեր, որոնք մեծ մասամբ գթութեան քոյրեր, բժիշկներ և սանիտարներ են կազմում։ Այսօրինակ չարագործութիւնները բնականաբար աւելի ևս յետաձգում են հաշտութեան ժամը, որին այնքան անձկութեամբ սպասում են գերմանացիք և թիւրքերը...

Պարսկական ճակատի վրայ շարունակւում է ռուսների շարժումը դէպի Բաղդադ։ Թշնամին ամրացել էր Քիրմանշահից 45 վերստ հարաւ Կարամալախում։ Ռուսները չորս ժամուայ կռուից յետոյ դուրս են մղել նրանց այդ ամրութիւնից և շպրտել դէպի հարաւ։ Այժմ նրանք Միջագետքից հազիւ 100 վերստ հեռաւորութեան վրայ են գտնւում։

Միջագետքի ճակատից այս շաբաթ տեղեկութիւններ չեն ստացուել։

### ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Անցեալ շաբաթ ֆրանսական սաւառնակների կատարած արշաւանքը դէպի գերմանօ-բուլղարական դիրքերը իր պատասխանը գտաւ այս շաբաթ։ Գերմանական մի ցեպելին և մի քանի սաւառնակ յարձակում գործեցին Սալոնիկի զօրանոցների վրայ, որ բռնուած են անգլօ-ֆրանսական զօրքերով։ Սակայն, ինչպէս երևում է, այս յարձակումն այնքան դաշնակիցներին չէ վնասել, որքան տեղական յոյն ազգաբնակութեանը. վերջինից սպանուել են 20 և վիրաւորուել 25 հոգի։ Այս դէպքը բուռն վրդովմունք է առաջացրել յոյների հասարակական շրջաններում։

### ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում այս շաբաթ աչքի էր ընկնում այն, որ գերմանացիք աշխատում էին կռիւների նախաձեռնութիւնը վերստին ձեռք ձգել։ Ռիգայից մինչև Դվինսկ և այստեղից մինչև Ռումինիայի սահմանը աւստրօ-գերմանացիք մանր խմբերով յարձակումներ էին գործում ռուսների դէմ, որոնք հեշտութեամբ յետ էին մղում թշնամուն։ Այս յարձակումների նպատակն աւելի շատ բարոյական է, քան թէ ռազմական։ Վերդէնի անյաջողութիւնը, ռուսական առաջխաղացութիւնը հարաւում և արևմուտքում և Պարիզի կոնֆերանսի տպաւորութիւնը ստուերի մէջ թողնելու համար էին կատարում աւստրօ-գերմանացիք այս յարձակումները, թէ չէ նրանք էլ շատ լաւ գիտեն, որ ներկայ հալոցքի օրերին որևէ լուրջ առաջխաղացութեան մասին խօսք լինել չի կարող։ Ռուսներն այս շաբաթ պաշտպանողական դերում էին. երևի նրանք այդ դերը կշարունակեն մինչև հալոցքի վերջը։

Ֆրանսական ճակատում այս շաբաթ կռիւները շարունակուեցին նախկին թափով Վերդէնի տակ։ Հսկայական զոհերի գնով գերմանացիներին յաջողուեց Բեթանկուր-Աւօկուր գծի վրայ (Մաասի ձախ ափին) գրաւել Մալանկուր գիւղը։ Ֆրանսացիք զիջեցին այս գիւղը թշնամուն, որովհետև նա շատ էր դուրս ցցուած և իր պաշտպանութեան համար մեծ զոհեր էր պահանջում։ Շաբաթուայ սկզբին մի շարք կատաղի յարձակումներից յետոյ գերմանացիներին յաջողուել էր 1—1½ կիլոմետր առաջ շարժուել Դուաժօն-Վօ գծի վրայ և գրաւել թէ Վօ գիւղը և թէ Դուամոնից հարաւ-արևելք գտնուող Լակայէտ անտառը։ Սակայն ֆրանսացիք մի քանի օրուայ յամառ կռիւներից յետոյ դուրս վռնդեցին թշնամուն վերոյիշեալ անտառից և Վօ գիւղի մի մասից։ Ըստ Հաւասի Գործակալութեան հաղորդագրութեան՝ վերջին օրերի կռիւները աւելի կորստաբեր են եղել թշնամու համար, քան առաջին յարձակումները Դուամոնի դէմ։

Ֆրանսացիք նախկին կորովով շարունակում են բերդի պաշտպանութիւնը։ Ներկայումս նրանք աւելի ուժեղ են Վերդէնում, քան թէ ճակատամարտի սկզբում. որովհետև այժմ անգլիացիք այնքան ուժ են կենտրոնացրել Ֆրանսիայում, որ կարող են ամբողջ ռազմաճակատի մի

*քառորդ մասը պաշտպանել։ Այս հանգամանքը հնարաւորութիւն է տալիս ֆրանսացիներին ուրիշ գծերից զօրքեր քաշել դէպի Վերդէն։*

*Արեւմտեան ճակատի այս շաբթուայ դէպքերի մէջ ուշադրաւ տեղ է բռնում գերմանական ցեպելինների արշաւանքն Անգլիա, որ տեղի ունեցաւ անցեալ գիշեր։ Այդ գիշեր 6 ցեպելին զանազան կողմերից յարձակւում են Անգլիայի վրայ և մօտ 200 պայթուցիկ և հրձիգ ռումբ ձգում զանազան վայրեր, որոնցով բազմաթիւ շէնքեր վնասւում, 43 մարդ սպանւում և 66 մարդ վիրաւորւում են։*

*Անգլիական օդագնացներից մէկը բարձրանում է 9000 ոտնաչափ և ցեպելինների մէկի վրայ ռումբեր նետում, որոնցից, ինչպէս ենթադրում են, նա վնասւում է։ Մնացածներն այս ասպատակութիւնից անվնաս են դուրս գալիս։*

Իտալական ճակատում *կանոնաւոր կռիւներն սկսած են բոլոր ռազմագծերի վրայ։ Այժմ կռիւների նախաձեռնութիւնը իտալացիների կողմն է, թէպէտև աւստրիացիք անսովոր եռանդ են գործ դնում իրենց ձեռքն առնել այն։ Կռիւներն ուժեղ են Իզոնցոյի հովտում և մանաւանդ Գորիցայի հիւսիսային կողմը։ Վերջին շաբթուայ կռիւներում իտալացիք ոչնչացրել են հինգ սաւառնակ և գերել մօտ 5000 աւստրիացի։*

* * *

# Ներքին տեսութիւն

## Ռ. Զ. Գ.

*Ի տեղեկութիւն հայրենիք վերադարձող փախստականների։*

*«Համբաւաբերի» խմբագրութիւնը, ի նկատի ունենալով այն բազմաթիւ դիմումները, որ անում են խմբագրութեանս փախստականները թէ Թիֆլիսում և թէ ուրիշ վայրերից հայրենիք վերադառնալու մասին, պարտք է համարում տեղեկացնել, որ կառավարութիւնը* առայժմ թոյլ է տալիս փախստականներին վերադառնալ Վան *և* իւր շրջանը։ *Այդ շրջանը վերադարձողներին էլ խորհուրդ կը տայինք, ինչպէս անցեալ համարում գրել էինք «Համբաւաբերի» առաջնորդողում, իրենց ընտանիքներին առայժմ թողնէին Կովկասում, քանի որ Վանում և իւր շրջանում հացի ու այլ ուտելեղէնի մեծ պակասութիւն կայ։*

## ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱ

### ՄԻԼԻՒԿՈՎԻ ՃԱՌԸ

*(Մարտի 11)*

*Ռուսաստանը թշնամի պետութիւնների երկաթեայ օղակով ճզմելու գերմանական ծրագրի խորտակումով մենք չենք կարող առանձին ուշադրութիւն չդարձնել քրիստոնեայ այն ժողովրդի վրայ, որ որպէս օվասիս ընկած է մահմեդական համատարած ծովի մէջ. մի ժողովուրդ, որի դէմ շարունակ ուղղուած է եղել Թիւրքիայի քաղաքականութիւնը։ Ես խօսում եմ հայերի մասին։ Դեռ սուլթան Աբդուլ Համիդի ժամանակ շատ պարզ է եղել Թիւրքիայի քաղաքականութեան նպատակը այդ բազմատանջ ժողովրդի նկատմամբ։*

*Այդ նպատակն էր՝ հայերի ֆիզիքական բնաջնջումը։*

*Միջազգային դիւանագիտութեան բազմաթիւ անգամներ կանխած ու խորտակած փորձերից յետոյ՝ թիւրքերին թուաց, թէ հասել է արդէն իրենց համար բարենպաստ րոպէն։ 1915 թուի ապրիլին Էնւեր-փաշան յայտարարում է գերմանական դեսպան Վանգէնհայմին, որ Թիւրքիայում խորը համոզուած են, թէ Կովկասեան ճակատի անյաջողութիւնը մեծ մասամբ պէտք է վերագրել հայերին։ Եւ եթէ վերջիններս այնպէս յամառ չնպաստէին ռուսական գործին, Թիֆլիսի ճանապարհն զգալիօրէն հեշտացած կը լինէր թիւրք բանակի համար։ Թիւրքերը չեն կարող ներել այդ հայերին և դրա համար էլ այնպէս կատաղութեամբ յարձակւում են նրանց վրայ։*

*Այս յայտարարութեան հետեւանքն էր, որ 1914 թուի ապրիլին Վանգէնհայմը հեռագրում է Բեռլին՝ այդ տրամադրութիւնների վրայ հիմնուած որոշակի ծրագիրը։ Էնւեր-փաշան յայտնել էր, որ Թիւրքիայի շահերը հայերի ազգովին արտաքսումն են պահանջում և խնդրում էր Գերմանիայից՝ արգելք չհանդիսանալ։ Իսկ Վանգէնհայմը իր կողմից պաշտպանում էր այդ միջնորդութիւնը։*

*Գերմանական տեսակէտից, սակայն, ձեռնտու չէր այդ աշխատասէր ու օգտակար ժողովրդի իսպառ ոչնչացումը, երբ Միջագետքի անապատները այդ իսկ տարրերի բնակեցման կարիքն ունէին։*

*Միջագետքում բնակուելով և հողագործութեամբ պարապելով հայը նոյնպէս շահւում էր,—մտածում են գերմանացիները,—որովհետև այնտեղ ամենահարուստ հողերն են գտնւում և նա, այդ ժողովուրդը տնտեսական բարգաւաճման կըհասնէր շուտով։ Կը շահուէին դրանից և կառավարութիւնը, և Բաղդադեան երկաթուղին։*

*Ինչպէս տեսնում էք՝ հայրենի հողից հայերին արտաքսելու և ապագայ գաղութում վերաբնակեցնելու միացեալ տակտիկան այնպէս տխուր յաջողութեամբ իրագործուեց Թիւրքիայում դեռ անցեալ տարի։ Այժմ՝ Էրզրումի և Հայաստանի այլ քաղաքների գրաւումից յետոյ, պէտք է յուսալ, որ վերջ էր տրուած այդ քաղաքականութեանը։ Ռուսական զօրքը արդէն երկրի այն մասումն է, ուր ամենից աւելի խիտ էր հայ ազգաբնակութիւնը։*

*Ո՞րն է հետագայ քայլը։ Թւում է, որ կասկածներ չեն կարող լինել։ Ռուսաստանին հաւատարիմ լինելու համար տուժած քրիստոնեայ ժողովուրդը պէտք է հաստատուի իր վայրերում և Ռուսաստանը, որ թիւրքական ռէժիմի ժամանակ իսկ ինքնօրէնութիւն էր խոստացել այդ ժողովրդին, պէտք է իրագործի իր խոստումը, երբ Հայկական վիլայէթների մեծ մասը իր ձեռքումն է արդէն։ Հայաստանի և հայերի բաղդը նոյնքան մօտ ու թանգ է մեր սրտին, որքան կռւում տուժած միւս ժողովուրդներինը, որոնք բարեկամ են մեզ և որոնք կռւում են մեզ հետ միասին։*

*(Ձայներ ձախից՝ «Բրաւօ»)։*

*Դժբաղդաբար նշաններ կան, որ այստեղ էլ կարող են կրկնուել Գալիցիան յիշեցնող մի շարք երևոյթներ։ Նշանները երևում են արդէն. և դա խիստ թեթև վերաբերմունք է դէպի լքած կայքըն ու գոյքը, որ, չգիտես ինչու, պետական սեփականութիւն է յայտարարուած։*

*Ինչ-որ դրդումներից՝ մենք պատրաստ ենք հովանաւորել անուղղելի թափառական քրդին և նրան երկրագործ դարձնել՝ ի հաշիւ իր հինաւուրց զոհի՝ հողագործ հայերի։ Դեռ երէկ էր, որ քիւրդը հայի հողն էր խլում, նրա կինը և աղջիկը առևանգում, թալանում ու սպանում էր նրան. իսկ այժմ՝ սկսում են սիրաշահել երէկուայ այդ թշնամուն, որպէս բարեկամի, նախապատուութիւն են տալիս նրան՝ հանդէպ վաղեմի ու հաւատարիմ բարե-*

կամ հայի։ Մտաբերենք, պարոններ, Դումբրգին, որ հայերի մասին ասել է. «Թող մեռած զոհերը իբրև կենդանի հաշուի առնուեն»։

Մենք ուժ չտանք կազմակերպուած թալանին և հողերի խլման, որ հնարաւոր էր միայն հին Թիւրքիայում։

Առաւել ես չպիտի մոռանենք հայերի բնիկ հողերը Նոր-Եփրատեան կոզակների հողերի վերածելու մասին։ Զչարունակենք Թիւրքերի սկսածը՝ մահմեդական մուջահիդները վերաբնակ ռուսներով փոխարինելով։ Գոնէ այստեղ, ոտնահարուած իրաւունքի և արդարամտութեան վերականգման այս հանդիսաւոր րոպէին, հրաժարուենք ազգայնական եսականութեան նեղ ծրագիրներից»։ (Զայներ ձախից՝ «Բրաւօ» Ծափեր)։

## ՎԵՐԱԴԱՐՁՈՒԵԼԻ ԲԸԿՍՏՈՆԻ ԳԱԼՈՒՍՏԸ

Լոնդոնի լորդ քաղաքագլխի ֆոնդի կողմից Թիֆլիս է գալիս վերապատուելի Հարոլդ Բըկստոն՝ ծանօթանալու հայ փախըստականների դրութեան ու վիճակին։ Վերոյիշեալ ֆոնդը հայ փախըստականներին օգնելու համար վեր. Բըկստոնի հետ ուղարկում է նաև երկու անգլիացի բժիշկ և չորս գթութեան քոյր։ Նրանք մեկնել են Լոնդոնից և 10 օրից կը լինին Պետրօգրադում։

Բըկստոն ընտանիքը մի քանի սերունդներից ի վեր ծանօթ է Անգլիայում իբրև ռահվիրաներ համամարդկային ազատագրական մեծ շարժումներին։ Նրանց ընտանիքի զանազան անդամները առաջնակարգ դեր են կատարել Աֆրիկայի գերեվաճառութեան ջնջման գործում, Արևելեան քրիստոնեաների դրութեան բարելաւման և ազատագրման գատերում։ Վեր. Հարոլդ Բըկստոն և նրա եղբայրը պ. Նոյէլ Բըկստոն—անդամ անգլ. պառլամենտի, Կովկաս այցելել են 1913-ի աշնան և Թիֆլիսից ուղևորուել են մինչև Վան։ Իբրև արդիւնք այդ ուղևորութեան երկու եղբայրները հրատարակեցին մի գիրք—Travel and politicsin Armenia—(ուղևորութիւն և քաղաքականութիւն Հայաստանի մէջ)—որ անկասկած Անգլիայում գործեց մեծ տպաւորութիւն։

Այդ գրքով նրանք պատմական փաստերով խօսում են հայ ազգի կենսունակութեան, ապագայի և հայ եկեղեցու մեծ դերի մասին։ Անգլ. մամուլը երկար ժամանակ զբաղուեց այդ գրքով մինչև համեւրոպական պատերազմի պայթելը։

Այժմ իբրև ներկայացուցիչ Լոնդոնի Լորդ-Քաղաքագլխի հայկական ֆոնդին, հայ մարտիրոս ժողովրդին այցելութեան է գալիս այդ ընտանիքի համակրելի և եռանդուն անդամներից մինը, վեր. Հարոլդ Բըկստոնը։ Թերևս նա կայցելէ փախստականների կենտրոնները՝ Էջմիածին, Երևան և այլն իր աչքով տեսնելու և հետաքրքրուելու հայ փախստականների ներկայ դրութեամբ։

Նա ներկայացուցիչն է այն ֆոնդին, որ վերջին 4—5 ամսուայ ընթացքում թէ Էջմիածնի Եղբայրական Օգնութեան և թէ Հայկ. Կենտր. Կոմիտէի նախագահ պ. Սամսոն Յարութիւնեանին փոխադրել է 800,000 ռուբլուց աւելի։ Ամսիս 26-ին Պետրօգրադ մեկնեց մեր թերթի աշխատակից պ. Արշակ Սաֆրաստեան հանդիպելու նրանց։ Նրանք Թիֆլիս կը հասնեն մօտ երկու շաբաթ յետոյ։

Անգլիացի բժիշկներն ու գթութեան քոյրերը, որոնք գործելու են Հայկ. Կենտ. Կոմիտէի ձեռնարկութեանց մէջ, բերում են իրենց հետ մեծ քանակութեամբ դեղորայք։

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԻՒՆ ԵՒ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Հասարակական խնամակալութիւնը կազմում է ընդհանուր սոցիալական հարցի միայն մի մասնիկը։ Սակայն ես նպատակ չունեմ կանգ առնելու հարցի այդ տեսակէտի վրայ յօդուածիս ծաւալի պատճառով, մասամբ էլ դրդուած այն հանգամանքից, որ «Համբաւաբեր»-ում արդէն լոյս է տեսել մի յօդուած, նուիրուած ընտրած նիւթիս այդ կողմին։

Բաւական է յիշել, որ հասարակական խնամակալութեան ամենախիստ հակառակորդներից մէկը՝ Մալտուսը, որի անունը անմահացել է քաղաքատնտեսութեան մէջ շնորհիւ նրա բաւական համարձակ, բայց և եղրակացութիւնների տեսակէտից բաւական դաժան տեսութեան, չէ համարձակուել ժխտել չքաւորների խնամք ստանալու իրաւունքը, թէպէտև նա շատ խիստ կերպով յարձակուել է չքաւորների մասին Անգլիայում հրատարակուած օրէնքների դէմ և պնդել է, որ եթէ այդ օրէնքները չը լինէին, Անգլիայի ժողովրդական բարեկեցութեան ընդհանուր մակերևոյթը աւելի բարձր կը լինէր։ Այժմ արդէն ոչ թէ այն մասին են վիճում, թէ արդեօք չքաւորները ունի՞ն իրաւունք խնամք ստանալու, թէ ոչ, այլ թէ ինչպիսի միջոցներով պէտք է կռուել մեր սոցիալական կազմին յատուկ այդ դժբախտութեան դէմ և ինչպիսի միջոցներով կարելի է այդ դժբախտութիւնը չափաւորել։

Այդ շրջանի հարցերից ամենագլխաւորի շուրջը ցարդ տեղի են ունենում վէճեր։ Թէ արդեօք պարտաւո՞ր է և պէ՞տք է պետութիւնը մասնակցութիւն ցոյց տալ չքաւորների խնամատարութեան գործին, թէ այդ գործը պէտք է թողնել միայն մասնաւոր անձանց ձեռներէցութեան և եկեղեցուն։ Պետութեան մասնակցութեան հակառակորդների գլխաւոր պատճառաբանութիւնն է, որ պարտադիր խնամատարութեան պետական սիստեմը, զարգացնելով մարդկանց մէջ խնամք ստանալու վստահութիւնը, թուլացնում է, նոյն իսկ ոչնչացնում է աշխատանքի եռանդը և տնտեսական անկախութեան ձգտումը, զարգացնելով անհեռատեսութիւն։

Պարտադիր խնամատարութեան կողմնակիցները պատասխանում են, որ այդ բոլոր պակասութիւնները հանդէս են գալիս շնորհիւ պարտադիր խնամատարութեան կազմակերպութեան եղած պակասաւոր կողմերի և որ կարելի է ստեղծել այնպիսի կազմակերպութիւն, որ պարտադիր խնամատարութիւնը ոչ միայն չը զարգացնի մարդկանց մէջ խնամք ստանալու վստահութիւնը, դարձնելով մարդկանց անընդունակ աշխատանքին, այլ ընդհակառակը՝ ժամանակին հասցրած օժանդակութիւնը աւելի ես լարի աշխատանքի եռանդը և տնտեսապէս անկախ լինելու ձգտումը։ Պարտադիր խնամատարութեան տեսակէտից պետութիւնները բաժանւում են 2 կարգի։ 1 Պետութիւններ, որոնք օրէնսդրական ճանապարհով հաստատում են չքաւորներին խնամատարութիւն հասցնելու պարտականութիւնը, ուրիշ խօսքերով, պարտադիր խնամատարութեան կողմնակիցներ են։ Այս տեսակի հայեացք տիրապետում է գերմանական և անգլօ-սաքսոնեան պետութիւններում (Անգլիա, Հիւսիսային Ամերիկայի Միացեալ Նահանգները, Նորուեգիա, Շուեդիա, Շուէյցարիայի գերմանական կանտոնները)։ Վերջին ժամանակները այս տեսակէտին է յարուել նաև Ֆրանսիան, մանաւանդ 1905 թուականից սկսած, երբ պետութիւնը յայտարարել է, թէ իր պարտքն է խնամատարութիւն ցոյց տալ զառամեալներին, անկարող և անբուժելի հիւանդներին և ապրուստի միջոց չունեցողներին։ Ահա այդ օրէնքի 1 յօդուածը՝ «Ամեն մի ֆրանսացի, որը չունի ապրուստի միջոցներ, անընդունակ է իր գոյութիւնը պահպանելու սեպհական միջոցներով, որը 70 տարուց անց հասակ ունի, անկարող կամ անբուժելի հիւանդ է, ստանում է այս օրէնքով հաստատուած խնամատարութիւնը»։

Երկրորդ կարգին պատկանում են այն պետութիւնները, որոնք չքաւորների խնամատարութիւնը պետութեան պարտականութիւն չեն համարում։ Այս տեսակէտին յարւում են ռոմանական երկրները—Ֆրանսիան մինչև 1892 թիւը, Իտալիան, Բելգիան, ֆրանսական Շուէյցարիան և այլն։

Բելգիայում 1891 թ. օրէնքով հաստատւում է պետական օժանդակութիւն բարեգործական հիմնարկութիւններին և հիւանդանոցներին, երբ նոքա օժանդակութեան կարիք ունեն. նոյնիսկ կազմակերպուած է չքաւորների ընդհանուր ֆոնդ, որին, իբրև

աղբիւր, ծառայում են պետութեան և առանձին նահանգների կողմից յատկացուած գումարները։

Ոչ միայն այն պետութիւններում, որոնք կողմնակից չեն պարտադիր խնամատարութեան սիստեմին, այլ նաև այն պետութիւններում, որոնք կողմնակից են պարտադիր խնամատարութեան, տիրապետում է այն հայեցակէտը, որ չքաւորների խնամատարութիւնը ինչ ձևով էլ որ տարուի, ինչպիսի կատարելագործուած կազմակերպութիւն էլ ունենայ, չէ կարող վերացնել մեր սոցիալական կեանքին յատուկ այդ դժբախտութիւնը, որ այդ դժբախտութեան դէմ կռուելու միջոցների մէջ խնամատարութիւնը բռնում է ոչ թէ գլխաւոր, այլ ամենավերջին տեղը միւս միջոցների հանդէպ, որոնք ունեն ընդհանուր տնտեսաքաղաքական բնոյթ և ձգտում են ժողովրդական բարեկեցութիւնը բարձրացնել։ Այս տեսակէտը խնամատարութեան մասին կարելի է անուանել չափաւոր, հակառակ այն շրջանների, որոնք որոշ միջոցներով ձգտում էին վերացնել չքաւորութեան գոյութիւնը մեր կեանքում։ Այս չափաւոր տեսակէտի վրայ է կանգնած հասարակական խնամատարութեան յայտնի մասնագէտ դոկտոր Միւնստերբերգը, որը Բեռլինի հասարակական խնամատարութեան վարչութեան գլուխն է։ Լսենք սրան։ «Ժողովրդական բարեկեցութեան հոգատարութեան միջոցների մէջ չքաւորների խնամատարութիւնը բռնում է անկասկած ամենավերջին տեղը, և այդ ոչ մի վայրկեան չը պէտք է աչքաթող անել։ Խնամատարութիւնը պիտի զբաղուի միայն այն մարդկանցով, որոնց հոգատար ընդհանուր միջոցները չեն կարողացել հեռու պահել չքաւորութիւնից, որոնք ոչ իրենց սեպհական միջոցներով, ոչ էլ իրենց ընտանիքի կամ նոցա օգնելու պարտաւոր ազգականների միջոցներով չեն կարողացել կանխել սպառնացող աղքատութիւնը»։ Պատմական անցեալում եղել են ժամանակներ, երբ մարդիկ ենթադրում էին այս կամ այն միջոցներով խսպառ ոչնչացնել աղքատութիւնը և միայն դարևոր փորձն է, որ ցոյց է տուել խնամատարութեան ամոք (պալիատիւ) նշանակութիւնը։

(Կը շարունակուի) Սոտնիկեան

## ԱՐԴԱՐԱՑԻ ՊԱՀԱՆՋ

Մեր փախստականական գործի համագումարից մայրաքաղաքում իրաւամբ առանձին ակնկալութիւն պէտք է ունենալ։ Թէ տառապողները և թէ օգնող մարմինները սպասում են այնպիսի խելացի, նպատակայարմար կազմակերպութեան, որ գործող մարմինները աշխատանքի համերաշխ բաշխման միջոցով տանելի դըրութիւն ստեղծեն Կովկասում մնացողների և հայրենիք վերադարձողների համար։

Երբ բանիմաց (ինտելիգենտ) փախստականների շրջանում մասնակցութեամբ Երևանից եկածների խորհրդակցում էինք այն մասին, թէ ինչպէս կարող էին օգտագործել տեղական ոյժերը իրենց բուն հայրենիքում, տեղեկութիւն տրուեց, որ Մոսկուայից հեռագրեր են եկել այն նպատակայարմար առաջարկութեամբ, որ համագումարին նաև բանիմաց փախստականներ մասնակցեն։

Մի խուլ տրտունջ կար սրանց շրջաններում, թէ ինչու Կովկասեցի ղեկավար մարմինները արհամարհեցին անտես անելով այն գործիչներին, որոնք իրենց միջավայրում կարևոր դերեր էին կատարած եղել հասարակական գործերում։ Արդարև, իրողութիւն է, որ փախստականների մասնակցութիւնը իրենց վերաբերեալ գաղթականական գործերում աննշան է եղել։ Պատճառներից մէկն այն է, որ պատերազմից առաջ կամ նրա ընթացքում Կովկաս եկած Թիւրքահայերից շատերը նուիրուած են եղել կամաւորական գործին։ Նրանցից մի քանիսը կարևոր պաշտօններ ստացել են նպաստամատոյց ընկերութեան մէջ, մի քանիսն էլ՝ ռոճիկով կենտրոնականում։ Իսկապէս ասած՝ գոնէ Թիֆլիսում շատ չեն եղել հասարակական գործունէութեան փորձառութեամբ անհատներ։ Բայց և այնպէս այժմ, երբ համագումարում յոյժ կարևոր խորհրդակցութիւն պէտք է տեղի ունենայ աւերուած երկրի ու ժողովրդական կեանքի վերաշինութեան մասին, անհրաժեշտ է Կովկաս և այլուր գտնուած Թիւրքահայ գործիչների մասնակցութիւնը։ Ուստի պէտք է յուսալ, որ ղեկավար մարմիններն ընդառաջ գնան Մոսկուայի գործիչների առաջարկութեանը, հէնց հիմակուանից կարևոր ոյժերին գործի մէջ մտցնեն։ Պատասխանատուութիւնըն անչափ մեծ է։

Այս է արդարութեան և նպատակայարմարութեան միանգամայն պահանջը։

Յ. Տէր-Միրաքեան

## ԳԱՒԱՌ

### ՔԱՐՈՒԱՆՍԱՐԱՅԻ ՇՐՋԱՆԻ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ԴՊՐՈՑՆԵՐԸ

Երբ մեր շրջանի գիւղերում տեղաւորուեցին գաղթականները, Կ. Հ. Բ. Ը. Խորհուրդը և Կենտրոնական Կոմիտէն առանձին հոգացողութեան առարկայ դարձրին նրանց զաւակների կրթութեան գործը։ Մեր ազգի նշանաբանն է և դպրոցը։

Տեղիս Բ. Ը. Վարչութիւնը անմիջապէս հրահանգ ստացաւ կարգաւորել գաղթական երեխաների կրթական գործը և աշնան վերջերում հետզհետէ բացուեցին դպրոցներ Վ.-Աղդան, Քարուանսարա, Թալա, Խաչթառակ, Աչաջուր, Սև-Քար և ապա Ուզունթալա գիւղերում։ Բացի տեղական դպրոցի ուսուցիչներից եկան գաղթական ուսուցիչներ Թիֆլիսից՝ 6 հոգի։

Վերոյիշեալ բոլոր գիւղերն էլ ունեն եկ.-ծխ. դպրոցներ, բացի Խաչթառակ գիւղից։ Երբ դեռ չէին ուղարկուած Խորհրդի կողմից գաղթական ուսուցիչները, խնդրել էի ծխ. դպրոցների Վարչութիւններին ընդունել գաղթական երեխաներին դպրոց, մանաւանդ գրաճանաչներին, որոնց թիւը քիչ չէր, որոնցից մինչև այդ մտել էին Վ. Աղդանի դպրոցը 10 հոգի, Թալայի դպրոցը 14 հոգի, որոնք և տեղացի երեխաների հետ շարունակում են համապատասխան բաժանմունքներում իրենց ուսումը առաւօտեան 9-ից մինչև ժամը 2-ը։ Իսկ ճաշերից յետոյ պարապում են գաղթական երեխաները։ Դպրոցներից Աչաջրինն է միայն, որ յարմարութիւն ունի մի սենեակում տեղաւորելու բնիկներին և միւսում գաղթականներին։ Դասերը սկսւում են միաժամանակ և վերջացնում միասին։ Սև-Քար գիւղում տեղացի ուսուցիչ պ. Մ. Գէորգեանը զիջել է իւր սենեակներից մէկը, ուր պարապում են I բաժ. աշակերտները առաւօտներից, իսկ միւս բաժանմունքները ծխ. դպրոցի դասերից յետոյ երկու դասարանում։

Սև-Քար գիւղը գաւառիս ամենամեծ գիւղն է մօտ 500 տուն ժողովրդով, ուր տեղաւորուած են 422 հոգի գաղթական. ցուցակագրուած էին մօտ 150 աշակերտ, որոնցից մի մասը ներկայումս գտնւում են գիւղիս որբանոցում։ Իսկ մնացեալները դասաւորուած են այսպէս՝

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ա. փոքր բաժ. | 31 | աղջ. | 21 | տղայ։ |
| Ա. մեծ բաժ. | 11 | » | 29 | » |
| Բ. բաժ. | 3 | » | 10 | » |
| Գ. բաժ. | 2 | » | 21 | » |

Ընդհ. թիւը—47 աղջիկ, 81 տղայ, ընդամենը 128։ Ունին երկու գաղթական ուսուցիչ և երկու տեղական ուսուցիչ, նաև մի կրօնուսոյց քահանայ, որոնց ռոճիկը և դասական բոլոր պիտոյքները հոգում է Կ. Կոմիտէն։

Սև-Քարի եկ-ծխ. դպրոցում սովորում են 57 աշակերտ, որոնցից 12 աղջիկ։ Ա. բաժանմունքը զատ, իսկ Բ. և Գ-ը միացեալ։

*Ուսուցիչներ երկու օրիորդ են, որոնք Խորհրդից նպաստ են ստանում 200 ռ.։*

*Աչաջուր գիւղում սովորում են 50 աշակերտ, որոնցից 16 աղջ. Ա. բաժանմունքում 16 աղջիկ և 31 տղայ. Բ.-ում 3 աղջիկ. ունի մի գաղթ. ուսուցիչ և մի կրօնուսոյց քահանայ։*

*Եկ.-ծխ. դպրոցն ունի 63 աշակերտ, որոնցից 18 աղջիկ։ Ա. Բ. և Գ. միացեալ բաժանմունքներում կան 18 աղջիկ և 45 տղայ։ Մի վարժուհի. Նպաստ՝ 100 ռ.։*

*Ուզունթալա, գաղթ. աշակ. 45 հոգի, որոնցից 3 աղջիկ։ Ա. Բ. և Գ. միացեալ բաժ. 4 աղջիկ 41 տղայ։ Մի գաղթ. ուսուցիչ և կրօնուսոյց քահանայ։*

*Եկ. ծխ. 44 աշ., որից 7 աղջիկ. մի ուսուցիչ, Նպաստ՝ 100 ռ.։*

*Ցարունասարա—Ա. և Բ. բաժանմունքն ունի 18 աշ. Նախապատրաստ—47, որից 23 աղջ.։ Մի գաղթ. ուսուցիչ և ծխ. դպ. վարժուհին։ Գաղթ. ուսուցիչը պարապում է 45 որբերի հետ, որոնցից 22 աղջիկ։*

*Եկ.-ծխ. դպ. 113 աշակերտ,1 ուսուցիչ, 1 վարժուհի, 2 քահանայ։ Նպաստ՝ 300 ռ.։*

*Վերին Աղդան՝ 98 հոգի, որից 10 հոգի ծխականումն են սովորում։*

*Ա. բաժ.—56, որից 36 աղջ.։*

*Բ.-ում 11 և*

*Գ-ում 12, որից 1 աղջ.։*

*Ունին 2 գաղթ. ուսուցիչ. 1 կրօնուսոյց և 1 վարժուհի ռուս լեզուի։*

*Բացի Խաչթառակից դպրոցում սովորում են ռուս լեզուն։*

*Պարտք եմ համարում հրապարակական շնորհակալիքս յայտնել և այն վարժուհիներին, որոնք սիրով յանձն առան պարապել գաղթ. աշակերտների հետ ձրիաբար։ Հարկ եմ համարում շեշտել, որ գաղթական ուսուցիչները բարեխղճօրէն են պարապում դասերը և ամեն ջանք թափում են մատաղ սերնդի կրթութեան գործի վրայ։ Չնայելով աննպաստ հանգամանքներին և ոմանց անբարեացակամ վերաբերմունքներին, գիւղումս փետրուարին բացուած է որբանոց, ուր ապրում են առայժմ մօտ 50 հոգի, որբերի թիւը հասնելու է 100-ի՛ գուցէ և աւելի, չնայելով որ մոլորեցնողները չեն քաշւում ժողովրդին ծակ ու ծուկերում ասել, թէ «որբերին խլելու են ձեզանից, մեզ տալ, հանեցէք»...։*

*Հայկական իրականութիւնը ինչե՛ր ասես, որ չի ծնում։*

*Վ. Աղդանի եկ.-ծխ. դպրոցում սովորում են 120 աշակ.։ Ա. բաժ. 52, որից 10 աղջիկ, Բ.-ում 39, որից 7 աղջիկ, Գ.-ում 19, որից 7 աղջիկ, Դ. և Ե. միացեալ բաժանմունքներում 8 և 3, 6 և 1։*

*Ունին չորս դասատու Նպաստ՝ 250 ռ.։*

*Մ. քհն. Էգիլեան*

***

*Ախալքալակ.—Այստեղ ապաստանուած տանձոտցի փախստականները՝ թւով 400 հոգի, ուզում են վերադառնալ հայրենիք, որպէսզի օր առաջ կարողանան կանոնաւորել տները և տնտեսութիւնը և կարևոր աշխատանքներ կատարեն՝ առաջիկայ ձմրանը իրենց ապրուստը ապահովելու համար, նամանաւանդ, որ այժմ արդէն ցանքսի ժամանակն է։ Փախստականները դիմելով Կ. Հ. Բ. Ը.-թեան խնդրում են՝ միջնորդել պատշաճաւոր իշխանութեան առաջ վերադարձի թոյլտուութիւն ստանալու, յայտնելով միաժամանակ, որ հարկաւոր է Ախալքալակից մինչև Տանձոտ վերադառնալու համար 70 սայլ, որ կարժենայ 2100 ռ., ծախսի փող ճանապարհին 1200 ռ., որովհետև Տանձոտում ոչինչ չէ ճարւում. հարկաւոր է մի ամսուայ պաշարի համար 2400 ռ. և հագուստ 1000 ռ., ընդամենը 6700 ռ.։*

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

—

### ԵՍԱՅԻ ԹԻՒՆԻՐԷԿԵԱՆՑԻ ԿՏԱԿԸ

*Թիւնիրէկեանի ընտանիքը կարելի է կոչել ազգային բարերարների ընտանիք։ Բալաբէկի անունը անմոռաց կը մնայ Շուշուայ Թեմական դպրոցում. չեն մոռանայ Անդրէասի յիշատակը, որ իւր 150,000 ռուբլի արժողութեան տունը Թիֆլիսում կտակել է քաղաքի հայ չքաւոր դասակարգին նպաստներ բաշխելու։*

*Այս երկուսից էլ գերազանցեց Եսայի Թիւնիրէկեանցը։*

*Նահանգական քարտուղար Եսայի-բէկ Արզումանեան Թիւնիրէկեանցը, բնիկ Շուշեցի էր, որ վախճանուեց 23-ն յուլիսի 1915 ամի Թիֆլիսում, 75 տարեկան հասակում։*

*Երկար ժամանակ նա թարգմանի պաշտօն էր կատարում առանձին կարևոր գործոց քննչի մօտ։ Մի փոքր դրամագլուխ ձեռք բերելով՝ նա սկսեց ծանօթանալ վաճառականութեան, առանձնապէս պարապում էր երկար ժամանակ ձկնավաճառութեամբ, որով և կարողացաւ ձեռք բերել մի խոշորկեկ կարողութիւն։*

*Նա իւր կեանքի ընթացքում միշտ բարի և կարեկից էր ուրիշներին, օգնում էր ոչ միայն աղքատ և տնանկ մարդկանց, այլ և իւր կենդանութեան ժամանակ նուիրաբերեց զանազան բարեգործական հիմնարկութեանց և դպրոցների օգտին խոշոր գումարներ։ Այսպէս օրինակ Շուշուայ Թեմական դպրոցի օգտին տուել է 10,000 ռ. և մահուանից քիչ առաջ 1000 ռ. յօգուտ փախըստականների։*

*Իսկ որ գլխաւորն է, նա իւր ամբողջ կարողութիւնը շուրջ 300,000 ռուբլի կտակել է Կ. Հ. Բ. և Հայուհեաց Բարեգործական Ընկերութեանց։ Ահա կտակից քաղուածքը.*

*Թիֆլիսի նահանգական դատարանը 20-ին նոյեմբերի 1915 ամի, հաստատել է հանգուցեալ Եսայի Իսաջան բէկ Արզումանեան Թիւնիրէքեանի կտակը։ Յիշեալ կտակի մէջ ի թիւս այլոց ասուած է՝ 1. (յօդ. 3) իւր բոլոր անշարժ կալուածները, ինչ էլ որ կը լինին իւր մահուան ժամանակ, ինչ տեսակի և ուր որ գտնուեն, պարտաւորեցնում են կտակակատարներիս վաճառել և վաճառումից ստացուած դրամը միացնել իմ դրամագլխին։ 2) (յօդ. 7) Ամբողջ դրամագլուխը, որը լինելու է պետական տոկոսաբեր թղթերից և Թիֆլիսի քաղաքային վարկի ընկ. օբլիգացիաներից, կնոջս մահուանից յետոյ պէտք է կազմեն անձեռնմխելի ֆոնդ, որ անցնելու է հետևեալ հիմնարկութիւններին, նախապէս բաժանելով երկու հաւասար մասերի, որի մի մասը անցնում է ա) Կովկասի Հայոց Բարեգործական իրաւանց տակ, իսկ միւս մասը 2) Կովկասի Հայուհեաց Բարեգործական Ընկ. այն պայմանով, որ կտակուած դրամագլուխը մնալով ընդմիշտ անձեռնմխելի, իբրև տոկոսաբեր թղթեր տրուին ի պահեստ Արքունի դրամատուն։ Վերոյիշեալ երկու ընկերութիւնները յիշեալ դրամագլխից պէտք է ստանան միմիայն տոկոսները, որոնց արդիւնքով պարտաւորւում են հիմնել և պահպանել կտակողի և նրա կնոջ անուան դըպրոցներ հետևեալ քաղաքներում—Թիֆլիս, Շուշի և Կովկասի ուրիշ քաղաքներում։ Այդ դպրոցները պէտք է լինեն սկզբնական և արհեստանոցներ, ուր սկզբնական կրթութիւն պէտք է ստանան և արհեստներ սովորեն հայ լուսաւորչական դաւանութեան պատկանող երեխաներ։ Այդ տարրական դպրոցներում և արհեստանոցներում երեխաները պէտք է սովորեն գրագիտութիւն, գործնական և այլ յատուկ արհեստներ, ինչպէս են՝ ձեռագործ, ջուլհակագործութիւն, դերձակութիւն, խոհարարութիւն և այլ արհեստներ և ճարտարապետութիւն, որպիսին յարմար կը գտնեն յիշեալ երկու բարեգործական ընկերութիւնները և տեղական կարիքներին համապատասխան։*

*Դպրոցների և արհեստանոցի տեսակները պէտք է որոշեն երկու ընկերութիւնների խորհուրդները և հաստատուեն ընդհանուր ժողովներով։*

***

Կ. Հ. Բ. Ընկերութեան Խորհուրդը՝ ի նկատի ունենալով քաղաքումս տիրող կենսական պիտոյքների թանգութիւնը, որոշեց աւելացնել ընկ. ծառայողների ռոճիկները 25% մինչև պատերազմի վերջանալը։

***

Խորհուրդը աչքի առաջ ունենալով, որ «Պօղոսեան ֆոնդի» տոկոսներից տպագրական աննպաստ պայմանների պատճառով չէ կարող գրքեր հրատարակել՝ որոշեց համաձայն Նուիրատու պ. Ա. Ի. Պօղոսեանի, տոկոսները կցել ֆոնդին և կազմել 10,000 ռ. անձեռնմխելի գումար, որի տոկոսներով տպագրել հետագայում գրքեր։

***

Թիֆլիսի վաճառական Սիմէօն Յակոբեան Մատինեանը ներկայացնելով Խորհրդին հարիւր ռուբլի, խնդրել էր ընդունել իրեն Կ. Հ. Բ. Ընկ. պատուաւոր անդամ։ Խորհուրդն ընդունեց և տուեց նրան մշտական անդամութեան մրցագիր (դիպլոմ)։

***

### ՃԻՒՂԵՐ

Արդահան.—Այստեղ կայացաւ խառն ժողով Ծխ. Հոգաբարձութեան և տեղիս Կ. Հ. Բ. Ընկերութեան ճիւղի վարչութեան անդամների։ Նախագահ ընտրուեց Հրանտ Մինասեան և քարտուղար՝ Արտակ Սաֆեանց։ Նախագահը ժողովին զեկուց Կ. Հ. Բ. Ընկերութեան Խորհրդի, որին ներկայ էր եղել և ինքը, կարգադրութիւնները։ Նախագահի զեկուցումներից խառն ժողովը տեղեկացաւ, որ Խորհուրդը որոշել է Արդահանի վիճակին ուղարկել ուսուցիչներ և դասական պիտոյքների և ուսուցիչների համար հարկաւոր դրամ, այլ և տեղական բժշկին յաւելեալ ռոճիկ 20 ռ. և գաղթականների համար շորեր։ Ժողովը յայտնեց իւր շնորհակալութիւնը Խորհրդին։

Այնուհետև ժողովը զբաղուեց նախահաշուով, ըստ որում մուտք սպասւում է 1240 ռուբ.։

***

Մեծ-Ղարաքլիսայի Կ. Հ. Բ. Ընկերութեան ճիւղի վարչութիւնը ուղարկել է Խորհրդին գաղթականական դպրոցների աշակերտների անուանացուցակը, որից երևում է, որ այդ շրջանում բացուած են գաղթականական դպրոցներ հետևեալ գիւղերում.

| | | |
|---|---|---|
| 1. Մեծ-Ղարաքիլիսա | 106 | աշակ. և աշակերտուհի, |
| 2. Համամլու | 63 | » |
| 3. Ղշլաղ | 29 | » |
| 4. Բողի գիւղ | 45 | » |
| 5. Բիքենդ (Մեծ Պարնի գիւղ) | 53 | » |

Բացի այդ կան գաղթական աշակերտներ նաև Եագորլուխի ծխ. դպրոցում։

***

Նոր ճիւղ Կ. Հ. Բ. Ընկերութեան. Կախ-Աւանի (Զաքաթալի գաւառ) հայ հասարակութիւնից Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը ստանալով պաշտօնական ձևով կազմած խնդրագիր և արձանագրութիւն Ընկերութեան ճիւղ բաց անելու թոյլտուութեան մասին, որոշեց թոյլ տալ խնդրատուներին ընկերութեան ճիւղ բաց անելու իրենց վայրում ու այդ առթիւ հաղորդեց Թիֆլիսի Նահանգական առեանին ցուցագրութեան համար։

***

### ՆՈՒԷՐՆԵՐ

1, Պետրոգրադի Հայկական կոմիտէտի միջոցով Ներքին գործոց մինիստրութեան կից առանձին խորհրդակցութիւնից 43,000 ռ. փախստական երեխաների ապաստարանների համար։

2, Փախստականների գործերի լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշեանից կրկին փախստական երեխաների ապաստարանների համար 45,000 ռ.։

***

Մելիտոպոլից պ. Ի. Ե. Ջերնիկովը հաղորդում է Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդին, որ մօտ օրերս կստանայ հանգուցեալ Ե. Ս. Կարամուրզայի կտակակատարներից, համաձայն նրա կտակի, 10,000 ռ., որը նշանակուած է յօգուտ Կ. Հ. Բ. ընկերութեան։

***

Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացել է յօգուտ փախստականների՝ Թիֆլիսի Փոխադարձ վարկի ընկեր. ծառայողներից 15 ռ. 62 կ.։

Թիֆլիսի Արտիստական ընկ. խորհրդից յօգուտ փախստականների որբանոցի 84 ռ.։

***

Գեներալ Վ. Թամամշեանը հաղորդում է, թէ Ներքին գործոց մինիստրութեան կից առանձին խորհրդակցութեան փոխատու յանձնակողմը կարգադրել է տալ 135,000 ռ. հայ փախստականների որբանոցներին յունուար, փետրուար և մարտ ամիսների համար։

***

### Հ. ԿԵՆՏՐ. ԿՈՄ.

Հ. Կ. Կ.-ին Տաճկաստանի Ղարաքիլիսէից հեռագրում են. —Ղարաքլիսէյից մինչև Խնուս, Մուշ ճանապարհները վատ են։ Առժամանակ սայլակներ չեն գնում ձիերի ուտելիք չլինելու պատճառով։ Մուշից եկողները հաղորդում են, որ 6000 փախստական սովի են մատնուած։ Ուտելիք գտնել անկարելի է։

***

Նախիջևանից.—Ձեր առած միջոցներով հիւանդութիւնները վերջացան։ Որբանոցի կահ-կարասիքը, անկողինները և շորերը նորոգուած են։ Խնդրում ենք հեռագրով փոխադրել 2000 ռուբ.։

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳԻՐՆԵՐ

### Հ. Կ. ԿՈՄԻՏԷԻՆ

1. Սարիղամիշ, Գ. Ջամոյեանից. Էրզրումից սպասւում է Սարիղամիշ մեծ քանակութեամբ փախստականներ. անհրաժեշտ է կառուցանել ժամանակաւոր փայտեայ շինութիւններ և բաց անել սննդատու կայարան։

2. Իգդիր.—Ա. Շարաֆեանից. Կենտրոնական Կոմիտէի նոր տրանսպորտը ուղևորուեց Մուշ, տարաւ տաք շորեր։ Ղարաքլիսա բաց արի սննդատու կայարան։ Կարիքը ծայրայեղ է, շատ տարածուած են հիւանդութիւններ։ Շուտափոյթ ուղարկեցէք ալիւր, թէյ և շաքար։

---

## Քրոնիկոն

Ապրիլի 26-ից Թիֆլիսում սկսուելու է Օգոստափառ Փոխարքայի Նախագահութեամբ շրջանային խորհրդակցութիւն Անդրկովկասում դէմստուօ մտցնելու մասին։

Խորհրդակցութեան հրաւիրուած են նահանգապետներ, ազնուականութեան պարագլուխներ, քաղաքագլուխներ, Թիֆլիսի և Բագուի քաղաքային ինքնավարութիւններից մէկ-մէկ ներկայացուցիչ և կառավարչական որոշ հիմնարկութիւնների պաշտօնեաներ։ Հասարակական-կուլտուրական հաստատութիւններից հրաւիրւում են մասնակցելու խորհրդակցութեանը ներկայացուցիչներ միմիայն գիւղատնտեսական ընկերութիւններից։

***

Այսօր նշանակուած է Քաղաքային Խորհրդի իրա-

ւասունների ընտրութիւն առաջիկայ չորսամեակի համար քաղաքային ընտրողական 4, 5, 6 և 7 մասերում։

* * *

Պետրոգրադում ծանր հիւանդութիւնից յետոյ վախճանուեց եւրոպական մեծ հռչակ վայելող յայտնի գիտնական, հասարակական գործիչ պրոֆէսոր Մ. Մ. Կովալեւսկին։ Հանգուցեալը եղել է Պետական Դումայի և Պետական Խորհրդի անդամ։

* * *

Փախստականների գործերի գլխաւոր լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշեանը պաշտօնապէս հաղորդել է Կ. Հ. Բ. Ընկ. նախագահ պ. Ս. Յարութիւնեանին, որ Կովկասի Փոխարքայի միջնորդութեամբ ներքին գործոց նախարարութեան կից առանձին խորհրդակցութիւնը նշանակել է 900.000 ռ. ուտեստեղէնի պահեստներ հիմնելու փախստականների համար և առաջարկում է, համաձայն Բարեգործ. Ընկերութեան կողմից ներկայացրած ծրագրին, սկսել պահեստների բացումը։ Բացի այս գումարից, կառավարութեան կողմից տրուելու են և ապրանքատար աւտոմոբիլներ ապրանքների փոխադրութեան համար։ Ընկերութեան Խորհուրդը և նրա կից Հայկական Կենտրոնական Կոմիտէն արդէն ձեռնարկել են նախապատրաստական աշխատանքներ այդ նպատակի համար։

* * *

Դիլիջանում, Մեծ-Ղարաքիլիսայում և Բարուանսարայում փախստականների և տեղական ժողովրդի մէջ վերջացել է բծաւոր տիֆը։

* * *

Թիֆլիսի շրջանային դատարանը, չորս օր քննելով ճարտարապետ Դ. Գ. Զիսլիևի գործը, որը մեղադրւում է Գոլովինսկի փողոցի վրայ գտնուող քաղաքային տան փլուելու առթիւ, երբ մի քանի անձինք վնասուեցին և ստացած վէրքերից վախճանուեցին, գտաւ մեղաւոր և վճռեց ենթարկել նրան բանտարկութեան 2 ամսով։ Պ. Զիսլիևը անբաւական մնաց այդ վճռից և բողոք է ներկայացնում Սենատին։

* * *

Ներկայումս Թիֆլիսումն են գտնւում Ամերիկեան հայանպաստ կոմիտէի ներկայացուցիչներ՝ դոկտոր-պաստոր Մաք-Քալում և դոկտոր Դրէյսեր, որոնք մօտ օրերս ուղևորւում են Վան՝ օգնելու վերադարձած հայ գիւղացութեան երկրագործական գործիքներով ու սերմացուով։

* * *

Մարտի 22-ին նշանակուած էր տուփերով հանգանակութիւն ռազմաբեմի զինուորներին «կարմիր ձու» ընծայ ուղարկելու համար, որը, սակայն, յորդ անձրևի պատճառով, սպասուածի չափ յաջողութիւն չունեցաւ։

* * *

Անցեալ կիրակի կատարուեցին 1-ին, 2-րդ և 3-րդ ընտրողական շրջաններում իրաւասուների ընտրութիւնները։ Ընտրուեցին ա. շրջանում՝ իշխան Լ. Վաչնաձէ, Յ. Գ. Գոոչաշուիլի, Պ. Ա. Գոտուա, Գ. Դ. Ժուրուլի, Գ. Ա. Կէյլ, Վ. Ա. Մուսխելով, Ս. Յ. Զրելաև. բ. շրջանում՝ Մ. Զ. Աւթանդիլեան, Ս. Գ. Ալդադանեան, Ի. Մ. Ալիխանեան, Ա. Գ. Ալխով, Ս. Ս. Յարութիւնեան, Մ. Ն Վեսելովզորով, Ի. Ն. Գամկրելիձէ, Պ. Դ. Գեղեանով, Պ. Մ. Դոլուխանեան, Մ. Ն. Նեպրենցև, Մ. Ի. Սւեչնիկով, Իւր. Ա. Թամամշեան, Վ. Օ. Տէր-Զաքարեան, Իշխ. Գ. Մ. Թումանեան, Յ. Ն. Խունունց, Ն. Ե. Ցուերով, Տ. Ա. Էնֆիաճեանց. գ. շրջանում Ի. Ս. Ալիխանեան, Լ. Յ. Տիգրանեան, Մ. Ն. Աթարէգեան, Մ. Ա. Զաքար, Ե. Յ. Ճանաքեան, Ի. Մ. Դոլուխանեան, Լ. Գ. Եւանգուլեան, Ռ. Ա. Յովհաննիսեան, Մ. Զ. Բանանեան, Մ. Ի. Մարտիրոսեան, Ի. Ս. Նեմալնի, Ա. Կ. Սամեդով, Կ. Ս. Սարգսեան, Գ. Զ. Թամամշեան, Ա. Ի. Խատիսեան։

* * *

Մարտի 19-ին, Վերայի կամուրջի մօտ, Բալանթարեանի տանը, կայացաւ հայ գաղթականների որբանոցի բացումը, Աստրախանի Հայկ. Կոմիտէի լիազօր տիկ. Եկատ. Մելքումեանի և բժ. Գ. Մեհրաբեանի նախաձեռնութեամբ։

* * *

Ա. Մ. Մահտեսի Յակոբեանին իրաւունք է տրուած Թիֆլիսում հրատարակելու վրացերէն լեզուով մի օրաթերթ «Քալաքիս փուրձելի» անունով Ի. Ե. Շմիդտի խմբագրութեամբ։

# Արտաքին տեսութիւն

## ՊԱՐԻԶԻ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ

Վերջին տարուայ ընթացքում Քառեակ Համաձայնութեան կատարած նախապատրաստական աշխատանքները պսակուեցին մի գործով՝ ակտով, որ մեր կարծիքով աւելի մեծ սարսափ պէտք է ազդի Գերմանիային, քան թէ Վերդէնի դիմադրութիւնը որևէ պարտութիւն այս կամ այն ռազմաբեմի վրայ։ Մեր խօսքը Պարիզի Կոնֆերանսի մասին է։ Գերմանիայի ռազմական յաջողութիւնների գլխաւոր պատճառները երեք են. առաջին՝ թիկունքի կազմակերպուած վիճակը, երկրորդ՝ ռազմամթերքի գերակշռութիւնը և երրորդ՝ թշնամիների ռազմական գործողութեանց բաժան-բաժան բնոյթը։ Առաջին երկու պատճառների նշանակութիւնը դաշնակիցները շուտով ըմբռնեցին և միջոցներ խորհեցին նրանց հակակշռելու համար։ Անգլիան և Ֆրանսիան առաջին պարտութիւններից անմիջապէս յետոյ, իսկ Իտալիան հէնց պատերազմի սկզբից, հասարակական ուժերը կազմակերպեցին՝ զօրքի և երկրի պարէնաւորումը կարգաւորելու, պետութեան ֆինանսները համապատասխան վիճակի մէջ դնելու և ընդհանրապէս յաղթական պատերազմի համար անհրաժեշտ թիկունքի կազմակերպութիւնը գլուխ բերելու համար։ Բացի այդ նրանք ձեռնամուխ եղան նոր զինագործարաններ առաջացնելու և մի տարուայ ընթացքում ահաւոր չափերի հասցրին իրենց ռազմամթերքի քանակը։ Ռուսաստանը ևս անցեալ ամառուայ պարտութիւններից յետոյ սկսեց վերոյիշեալ երկու ուղղութեամբ աշխատել։ Թէև այստեղ, շնորհիւ քաղաքական յոռի կարգերի, թիկունքի կազմակերպութիւնը շատ դանդաղ և անկատար կերպով առաջ գնաց, սակայն և այնպէս Ռուսաստանը դաշնակիցների աջակցութեամբ կարողացաւ իր ռազմամթերքի քանակն այնչափ մեծացնել, որ հնարաւոր դարձաւ կանգնեցնել գերմանացոց առաջխաղացութիւնը, իսկ տեղ տեղ նաև նրանց յետ մղելու փորձեր կատարել։ Այսպիսով թիկունքի կազմակերպման և ռազմամթերքի քանակի տեսակէտից դաշնակիցների վիճակն այս տարուայ սկզբին կարելի էր գոհացուցիչ համարել։ Նրանք կարող էին հակակշռել Գերմանիային։

Սակայն մնում էր իր ոյժի մէջ Գերմանիայի երրորդ առաւելութիւնը—նրա և իր զինակիցների ռազմական միահամուռ գործողութիւնը հակառակորդների անջատ-անջատ գործողութեանց հանդէպ։ Դաշնակիցների անջատ-անջատ հանդէս գալը անգնահատելի ծառայութիւններ է մատուցել Գերմանիային մինչև օրս։ Շնորհիւ իր հաղորդակցութեան միջոցների կատարելութեան նա կարողացել է իր զօրքը մերթ այս ռազմաճակատում կենտրոնացնել, մերթ այն և այս արհեստական միջոցով ամեն կռւում ուժերի գերակշռութիւնը ձեռք բերելով յաղթող հանդիսանալ։ Այս տակտիկն անհնարին կը լինէր, եթէ դաշնակիցների գործողութիւնները ներդաշնակուած լինէին, եթէ նրանցից մէկի կռուելու դէպքում միւսները հանդիսատեսի դեր չկատարէին։

Ահա Գերմանիայի ձեռքից յաջողութեան վերջին շանսն էլ խլելու համար էր հրաւիրուած Պարիզի Կոնֆերանսը, որ տեղի ունեցաւ ամսոյս 14-16-ը։

Կոնֆերանսին մասնակցում էին Անգլիայի կողմից՝ մինիստր-նախագահ Ասքուիթը, արտաքին գործոց մինիստր Սըր Էդ-

*հեռացած էին իրենց ազգութենէն ու կրօնքէն։ Ահա սոր համար է որ մենք կսքանչանանք Հայերու վրայ, և պարտք կը համարինք աշխատիլ իրենց դատին։ Հայերը մինչև հիմա քաղաքակրթիչն եղած են Ասիայի, արդ՝ կսպասենք որ ասկէ ետք ալ պիտի շարունակեն իրենց քաղաքակրթիչի դերը կատարել Ասիայի մէջ։ Արևելքի բոլոր ազգերուն մէջէն միայն Հայն է որ կրնայ կատարել այս դերը»։*

*Այս խօսքերէն ետք ազնիւ Հայասէրն աւելցուց հետևեալ սպառնալիքը. «Եթէ Անգլիա՝ Հայոց համար այս անգամ ալ բան մը չընէ, այն ատեն ես պատերազմ պիտի հրատարակեմ Անգլիայի դէմ, ինծ հետ ունենալով բոլոր ազատական կուսակցութիւնը»։*

*Հանդիսականները քաջալերուած մեծ հայասէրի խօսքերէն, ուրախ սրտով մեկնեցան սրահէն։*

# Գ ր ա կ ա ն ա կ ա ն

## ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ

—

*Մարտի 19-ին, երեկոյեան, Ազգագրական ընկերութեան խմբագրական մասնաժողովի փակ նիստում պ. Մանուկ Աբեղեանը կարդաց մի շատ հետաքրքրական զեկուցում «Գր. Նարեկացին իբր բանաստեղծ» նիւթի մասին, որի համառօտ բովանդակութիւնը հետևեալն է.*

*Մինչև այսօր Նարեկացու գրուածքները թէև տպուել են մի քանի անգամ, սակայն և այնպէս դեռ չունենք նրա երկերի լրիւ ու գիտական հրատարակութիւնը. ուստի անհրաժեշտ է հէնց սկզբից յիշատակել, ասաց յարգելի դասախօսը, որ իմ ուսումնասիրութիւնը նկատի ունի յատկապէս այն տպագրութիւնը, որ լոյս է տեսել 1840 թուականին, Վենետիկում, և որ լաւագոյնն է եղածներից։*

*Գրիգոր Նարեկացուց առաջ ես մենք ունեցել ենք կրօնական բանաստեղծներ, սակայն նրանք մեծ մասամբ ցարդ մնացել են անանուն։ Բացի այս՝ նրանց գրուածքները չունենալով անհատական բնոյթ՝ չունեն նաև քնարական մեծ գեղեցկութիւններ. այդ բոլոր հոգևոր երգիչների գլխաւոր նպատակն է եղել քրիստոնէական սկզբունքներ քարոզելը. բնութեան նկարագիրը բացակայում է նրանց ստեղծագործութեանց մէջ։*

*Այն ինչ Գր. Նարեկացին իւր երգերում ոչ միայն հանդէս է բերում բնութեան չքեղ պատկերներ, այլ նաև իւր զգայուն սիրտն է բաց անում մեր առջև՝ միաժամանակ արտայայտելով իւր դարի ոգին։*

*Այդ ոգին կրօնական էր, ճգնական. նրա հիմքը հաւատն էր, նպատակը՝ ձգտումն առ Աստուած։ Գիտենք, որ մեր եկեղեցական հայրերը վաղուց ի վեր մարտնչելով Զրադաշտի պաշտամունքի և մահմեդականութեան դէմ՝ քրիստոնէական կրօնի գաղափարներն արդէն ժողովրդականացրել էին, առաջ բերել բարոյական մտագրաւումն, որոշ աշխարհայեացք նոյնիսկ։ Բնականաբար մի այդպիսի հոգևոր ընդհանուր շարժում պիտի ունենար նաև իւր առանձնայատուկ բանաստեղծութիւնը, մանաւանդ որ այդ ժամանակ, այսինքն տասներորդ դարի առաջին քառորդից մինչև տասնըմէկերորդ դարի առաջին քառորդը՝ ամբողջ հարիւր տարի, Հայաստանի քաղաքական խաղաղ կեանքը նպաստաւոր էր արուեստների բարգաւաճման համար։*

*Եւ իրօք, այդ շրջանում կառուցւում են բազմաթիւ վանքեր, որոնք զարդարւում են նկարներով, հանդէս են գալիս հոգևոր երգիչներ, զարգացնում են եկեղեցական երաժշտութիւնը։*

*Վանքերում հաւաքւում էին հարիւրաւոր տղամարդիկ, երբեմն մինչև 700—800 հոգի և նուիրւում էին մաքրակենցաղ ճգնութեան՝ իրենց ապրուստը հայթայթելու համար պարապելով նաև երկրագործութեամբ։ Նրանց կեանքը և վաստակը համայնական էին. չը կար մասնաւոր սեփականութիւն։ Այդ բարեպաշտ մարդիկ աղօթքից ու ֆիզիքական աշխատանքներից ազատ եղած ժամերին սովորում էին կարդալ, գրել, ուսումնասիրում էին Աստուածաշունչն ու Նոր կտակարանը, մինչև անգամ շարադրում էին մեկնաբանական թղթեր, մասնակցում դաւանաբանական վէճերի։ Եւ պէտք է ասել, որ այդ դարերում հոգևորականները մեծ հեղինակութիւն էին վայելում թէ ժողովրդի մէջ և թէ իշխանական տներում։*

*Բայց վանքերում սովորող բոլոր աշակերտներն էլ անպատճառ կրօնաւոր չէին դառնում. ոմանք վերադառնում էին իրենց գիւղը կամ քաղաքը և այնտեղ ինքնաբերաբար տարածում այն ուսումն ու կրօնական ոգին, որ իւրացրած էին լինում վանքերում։ Եթէ կենցաղասէր մարդիկ մեղքի և հաճոյքի օրինակներ էին դառնում, վանականներն էլ հոգևոր ժուժկալ կեանքի պահանջն էին քարոզում. երկինքն ու երկիրը մի տեսակ մրցման մէջ էին կարծես։ Ահա այդ միջավայրի, այդ տրամադրութիւնների երգիչն է Գրիգոր Նարեկացին։*

*Դժբախտաբար շատ քիչ բան գիտենք նրա կեանքի մասին։ Հայրը մի հմտաբան կրօնաւոր էր, Անձևացեաց Խոսրով եպիսկոպոս անունով յայտնի, որից մեզ հասել են «Ժամագրոց մեկնութիւն» և «Մեկնութիւն խորհրդոյ սրբոյ պատարագի» աշխատութիւնները։ Գրիգորը ծնուած է լինելու 940-ական թուականներին, այն է՝ հօր աշխարհական եղած միջոցին, որովհետև այդ դարում վարդապետներն էլ, եպիսկոպոսներն էլ կուսակրօն էին։ Գրիգորն ունէր նաև մի եղբայր, անունը Յովհաննէս, որը շատ ուշիմ է եղել և որոշ օգտակար ազդեցութիւն թողել Գրիգորի վրայ։ Վերջինս մանկութիւնից ապրում էր Նարեկայ հռչակաւոր վանքում և աշակերտում էր գիտնական Անանիա եպիսկոպոսին, մինչև որ ձեռնադրուեց կուսակրօն քահանայ՝ ընդմիշտ հաստատուեց վանքում, ուր նա ստանձնել էր նաև ուսուցչի պաշտօն և արժանացել «վարդապետ» (գիտուն) տիտղոսին։ Ժամանակակիցները նրան համարում էին արդար, սուրբ, նոյնիսկ հրաշագործութիւններ էին վերագրում նրան։ Միայն թէ զարմանալի է, որ գիշեր ցերեկ արթուն հսկող, աղօթող այս մարդը թշնամիներ, բամբասողներ էլ է ունեցել։ Երևի թիւրիմացութեան արդիւնք է այդ։ Յայտնի է, որ նրա հայրը զառամած հասակում եկեղեցու նուիրապետութեան դէմ յայտնած կարծիքների համար աղանդաւոր էր համարւում։ Նոյն կարգի հակառակորդներ ունէր նաև Անանիա եպիսկոպոսը։ Հաւանական է, որ ոմանք կանխակալ կարծիքներով թշնամացած լինէին նաև Գրիգորի հետ՝ մտածելով, թէ վերջինս այդպիսի հօր և այդպիսի ուսուցչի մօտ դաստիարակուած լինելով զերծ լինելու չէր նմանօրինակ թերութիւններից։*

*Ուրիշ ոչինչ չը գիտենք Նարեկացու մասին, մինչև իսկ մահուան թուականը. նա վախճանուել է փետրուարի 7-ին (ըստ Յայսմաւուրքի), հաւանականաբար ծերութեան հասակում։ Նա թաղուել է Նարեկայ վանքում, ուր նրա շիրիմը մինչև այսօր էլ գրաւում է ուխտաւորներ։*

*Նարեկացին մօտիկ ծանօթութիւն է ունեցել Արծրունեաց թագաւորների հետ, որոնցից մէկի՝ Գուրգէնի խնդիրքով գրել է Երգ Երգոցի մեկնութիւնը։ Բացի այս՝ տօնախմբութեանց կամ բացառիկ այցելութիւնների առթիւ էլ, ի հարկէ, նա քիչ թէ շատ կարող էր տեսնել աշխարհի մարդկանց ու առհասարակ կեանքը։ Մնացած ամբողջ ժամանակը իւր միաբանակիցների նման նա էլ ապրում էր խստակեաց ճգնաւորի պէս, ամփոփուած ինքն իւր մէջ, ներքին հայեցողութեամբ՝ շարունակ խորհելով մեղքի, փրկութեան, Աստուծոյ, Սատանայի, դատաստանի,] արքայութեան, դժոխքի մասին՝ անդադար զրկանքի ու տանջանքի ենթարկելով իւր անձը։ Աղօթքի և տքնումի այդ մռայլ միջավայրում է նա շարադրել իւր երկերը, որոնցից մեր ձեռքն են հասել՝ Մեկնու-*

*անլուծելի աղօթք քաւի իւր չը ներուած մեղքերը, մինչ նա ինքը գերեզմանում արդէն փոշի դառնալիս կը լինի։*

*Նա չէ ուզում արժանանալ պարզապէս արքայութեան հանգստին, ոչ. դա կըլինէր գռեհիկ արարածի բաղձանք։ Նարեկացին, իբր մեծ միստիք, ուզում է, ինչպէս ասացինք, տեսնել Արարչին, անվերջ խառնուել Նրա էութեանը, ճշմարտապէս էանալ։*

*Բայց մարդ միանալով իսկ Աստծուն՝ էլի պահպանում է իւր անհատականութիւնը՝ միայն թէ աստուածացած.— Աստուած մարդու մէջ, մարդը Աստուծոյ մէջ։ Արդ, հեշտ էր բարոյական այդ մեծ նպատակին հասնել մեր հողեղէն թեւերով. պէտք էր ունենալ հաւատ, յոյս, սէր։ Սիրով է միայն իսկապէս մարդ աստուածանում. պէտք է խորանանք մեր հոգու մէջ, ուր ապրում է Աստուած, դիտենք շարունակ, կտրուենք մարմնի կապանքներից, նուաստացնենք մեզ, բարի գործենք, անվերջ ապաշխարենք, աղօթենք, մինչեւ որ արժանի համարուենք Արարչի շնորհքին։*

*Խնդիրն աւելի կը ծանրանայ, եթէ աւելացնենք նաեւ, որ Նարեկացին միաժամանակ շատ յոռետես հայեացք ունի մարդու կարողութիւնների մասին։ Մենք չնչին ենք, թոյլ, ողորմելի, մեղսական. գիտնալով հանդերձ, որ մարմինը կորստաբեր է, այնուամենայնիւ չենք կարողանում բաժանուել նրանից. մշտական խաղալիքներ ենք իսկապէս երկու ներհակ ուժերի միջեւ՝ հոգու եւ մարմնի, կամ՝ Աստծու եւ Սատանայի։*

*Եթէ Աստուած ազատ է թողնում մարդուն ինքնակամ գործելու, Սատանան, ընդհակառակը, իւր արբանեակների խմբով միշտ կանգնած է մարդու կողքին, մոլորեցնում է նրան, ապա սկսում ծիծաղել։ Սատանայի գայթակղութիւնները սարսափելի են մանաւանդ գիշերային մթութեան մէջ, ուստի մարդ քնելուց առաջ պէտք է առանձին աղօթքներով կանխապէս անզօր դարձնի նրա մերձեցումը։*

*Այս մռայլ աշխարհայեացքի մէջ տեղ-տեղ նշոյլում է յոյսի մի փոքր շող, որը սակայն չէ կարողանում նրա ողբերգութիւնից առաջացած ճնշող տպաւորութիւնը նոյնիսկ մասամբ մեղմացնել։*

*Տեսիլը Նարեկացու երկի մէջ մեծ տեղ է բռնում. Սատանան, դժոխքը, դատաստանը, մահը, արքայութիւնը եւ այլն փոխ ընդ փոխ հանդէս են գալիս, Աստուածային կատարելութեան սարսռեցուցիչ տեսարանների պէս համարեա։ Այնպիսի պայծառութեամբ է տեսնում նա այդ պատկերները, որ մանրամասն վերլուծութեան է ենթարկում յաճախ. իբր նկարիչ, Նարեկացին վերլուծական եղանակով է առաջնորդւում։ Նա շատ ուժեղ է յատկապէս Սատանային ու դժոխքը ցուցադրելիս։*

*Նարեկացու արուեստը զերծ չէ նաեւ թերութիւններից. իւր մտքում ծնուած բազմաթիւ ու յախուռն պատկերները նա տալիս է անխտիր, բոլորն էլ, առանց ընտրութեան. այս պատճառով էլ ճոռոմութիւն, անճաշակութիւն, ծանրութիւն էք նկատում նրա հոյակապ ապաշխարանքների մէջ. ստիպուած ես շարունակ լարուած պահելու միտքդ, որպէսզի հնար լինի բազմաթիւ նախադասութիւններից բաղկացած ասացուածքների մէջ կապ պահպանել։ Բայց երբ արդէն մարդ մի անգամ վարժւում է նրա արտայայտութեան եղանակին, այսպէս ասած ընկնում է նրա խօսքի առատաբուղխ հոսանքի մէջ եւ գիտակցաբար ընթանում առաջ, ապա իրօք որ յուզւում է, հիանում, զարմանում նրա մտքի ու սրտի լեռնացած կոհակներից, որոնք անդադար ձգտում են երկինք, ընկնում, փշրւում, ու նորից ուռչում են եւ անվերջ։*

*Յիշատակութեան արժանի է նաեւ այն տեսութիւնը, որ Նարեկացին ունի բանաստեղծութեան արուեստի մասին, մի շատ նրբամիտ տեսութիւն, որի տարրերը ցրուած են նրա երկի մէջ։ Նրա կարծիքով յօրինելը մի շնորհք է, որ Աստուած է տալիս մարդուն։ Բայց այդ երկնային պարգեւը միայն բանաստեղծի անձնական զգացմունքներն ու խորհուրդներն արտայայտելու համար չէ ծառայում. բանաստեղծը իւր սրտի միջոցով արտայայտում է նաեւ բոլոր մարդկանց սրտերի բաբախումները։ Ստեղծագործութեան համար նիւթ են դառնում յաւիտենական գաղափարներ, որոնք երբէք չեն փոխւում, չեն մեռնում. փոփոխականը արտայայտութեան ձեւերն են, որոնք էական իղէաների շուրջը ճիզաւորւում են զանազան կերպերով։*

*Նարեկացու լեզուն հարուստ է, ինքնատիպ, իմաստալից, գունագեղ, թարձացեալ ու վերացական միաժամանակ. Նախորդների անգոյն լեզուն չէր կարող բաւականացնել նրան. նա ստեղծել է իւր յատուկ բառապաշարը, յատուկ ոճը։*

*Այլազան է նաեւ նրա տաղաչափութիւնը. երբեմն էլ գրում է յանգերով։*

*Այս բոլորից յետոյ պարզ է, որ Գր. Նարեկացու վայելած հռչակը իրաւացի է. իսկապէս որ նա եղել է մի սքանչելի կրօնաւոր եւ մի մեծ միստիք բանաստեղծ։ Այդ ասպարիզում եւ նրա ապրած դարաշրջանում նոյնիսկ եւրոպական գրականութեան մէջ ոչ մի հեղինակ չէ կարող համեմատուել նրա հետ։*

* * *

*Ամբողջ երկու ժամ տեւող այդ զեկուցումով պ. Մանուկ Աբեղեանը մի անգամ եւս ապացուցեց, որ ինքը իրօք ունի հարուստ էրուդիցիա եւ քննելու եզակի կարողութիւն։*

*Շատ ցանկալի է, որ մի այդպիսի լուրջ եւ հետաքրքրական դասախօսութիւն լոյս տեսնի առանձին գրքոյկով եւ թէ կրկնուի ստուար հասարակութեան ներկայութեամբ։ Հաւատացած ենք, որ ունկնդիրները հիացքով կը լսեն բազմահմուտ գիտնականի սքանչելի վերլուծութիւնը, որ մեր աչքի առջեւ վերակենդանացնում է հայ միջնադարը իւր հանճարեղ միստիք բանաստեղծի հետ միասին։*

*Մ. Մատէնճեան*

# Գեղարուեստ

## «ԱՐԻՒՆ ԷՋԵՐ» ԳՐՔԻՑ

IV

*Ոտնահարուեց բազմանգամ
Եւ գիւղն աւեր է հիմայ.
Ընկած անոյժ, արիւնքամ,
Նետուած շտապ, ակամայ,
Փոքրիկ մանուկ մի անճար՝
Ինչպէս լքուած ու անտէր՝—
Լաց է լինում չարաչար...
Եւ հաւատում, յուսում դեռ,
Որ մէկն իրեն կ'յիշի,
Կամ յետ կ'գայ բերմունքով
Եւ իր կանչը կ'լսի
Ու կտանէ իր մօր քով։
Եւ ինձ պէս որբ ու անտէր—
Լաց է լինում չարաչար,
Եւ յուսում է, յուսում դեռ
Մանուկը խեղճ ու անճար։*

V

*Զուլեցէք, ձուլեցէք գնդակներ,
Մատաղ կուրծք, միս, այնքան ու այնքան,
Զուլեցէք, ձուլեցէք գնդակներ։*

*Հիւսեցէք պսակնե՛ր, պսակներ,
Դաշտերում ծաղիկները այնքան,*

Հիւսեցէք պսակնե՛ր, պսակներ...
Նուագէք թաղումի քայլերգեր,
Մեռելները այնքա՜ն ու այնչա՜ն,
Նուագէք թաղումի քայլերգեր։

VI

Օրհնութի՛ւն քեզ, աւե՛ր երկիր,
Ա՛զգ տարագիր,—
Դարե՛ր այսքան
Հալածական...
Օրհնութի՛ւն քեզ, աւե՛ր երկիր։

Դո՛ւ, որ մոխրից վե՛ր ես կենում
Ու չե՛ս մեռնում,
Եւ դարէդար՝
Դո՛ւ գետնահար—
Բայց միշտ մոխրից վե՛ր ես կենում։

Երազներով հոգիդ վառած,
Թեւատարա՜ծ—
Լոյս անրջում՝
Բարձր ես թռչում—
Երազներո՜վ հոգիդ վառած։

Օրհնութի՛ւն քեզ, ա՜զգ պանծալի։
Որ անցեալի
Անկումներից
Վե՛ր ես նորից,—
Օրհնութի՛ւն քեզ. ա՜զգ պանծալի!

VII

Տիրեց ինձ մրմուռ
Ե՛ւ խորունկ և մեծ
Ցանցեց ինձ ամուր
Ու սրտիս բազմեց։
Եւ լքեցին դեռ
Ընկեր ու ծնող,
Ջարդում է սրտիս՝
Ամեն մի անցնող...
Ես ճիչն իմ վէրքի
Խեղդելով կամաց՝
Ցաւոտն ամենքի
Լալիս եմ հիմայ։

Դ. Քեալաշեան

---

## ԱԿՆ ԸՆԴ ԱԿԱՆ

### Ա.

Կարծես վէրքը նորոգուելով մղկտեցնում է ֆրանսացոց ու գերմանացոց սրտերը, երբ մտաբերում են կործանարար պատերազմը, որ բռնկուեց նրանց մէջ 1870 թուին։

Այդ պատերազմին գերման զօրքերը յաղթական կերպով խուժում էին Ֆրանսիայի ներսը։ Ֆրանսացիք յուսահատ դիմադրում էին և արեան հեղեղները հոսում էին ֆրանսական հողի վրայ։ Պատերազմն արդէն վախճանին էր մօտենում, երբ Արդինեան սարերում մի գիւղի փողոցում ֆրանսացի կամաւորները սպանեցին վեց գերման զինուոր, որոնք մեծաւորի հրամանով եկել էին պաշար տանելու։

Այդ դէպքի վրայ գիւղն եկաւ գերմանական հետեւակ մի վաշտ։ Ֆրանսացի կամաւորները փախել էին լեռները։ Գերման սպան կատաղած իրա զինուորների սպանութեան պատճառով, գիւղի բոլոր բնակիչներին մեղադրում էր մարդասպաններին օգնելու համար և պահանջում էր իրան յանձնել վեց գիւղացի, որոնց իրա կարծիքով պէտք էր գնդակահարել սպանուած գերմանների արեան վրէժը հանելու համար։ «Եթէ 6 գիւղացի չէք տալ յօժարակամ, ես ողջ գիւղը կրակի քերան կըտամ», սպառնում էր սպայ վաշտապետը։

Սարսափած գիւղացիք չգիտէին ինչ անեն. Նրեման վրայ յոյս դնելը զուր բան կըլինէր, նոյնպէս յոյս չկար թէ փախած կամաւորները կըվերադառնան։ Երկար տատանուելուց հտ վճռեցին վիճակ գցել, թէ ո՛վ պիտի գնդակահարուի։ Վեց միանգամայն անմեղ գիւղացիք, որոնց վրայ վիճակն ընկել էր, յանձնուեցին գերմանացոց։ Նրանց փակեցին գիւղի դպրոցի մէջ ու դուռը պահապան դրին։

### Բ

Այդ օրուայ երեկոյեան գերման սպայի մօտ եկաւ գիւղի քահանան, թոյլտուութիւն խնդրեց մտնել կալանաւորների մօտ վերջին մխիթարութիւնը տալու նրանց, ինչպէս Քրիստոսի Աւետարանը պատուիրում է։ Վաշտապետն իրաւունք տուեց և պահապանը լապտերը ձեռին առաջնորդեց քահանային մութ դպրոցը, լապտերը դրեց սեղանի վրայ, իսկ ինքը մնաց դրան մօտ ֆրանսացոց հսկելիս։

Լապտերի թոյլ լոյսն աղօտ լուսաւորում էր կալանաւոր գիւղացոց. Նրանց թեւերը կապկպած էին մէջքներին, ոտներն էլ պինդ կապ տուած մի թոկով։ Գիւղացիք քաղցից, վշտից և մարմինը սղմող թոկերից այնպէս թուլացել էին, որ հազիւ էին քահանայի խօսքերն ըմբռնում։ Երկուսը նրանցից յենուել էին պատին ուշքը կորցրած, մէկը ցնցւում էր ջերմոտի պէս։ Թոկի ձախ ծայրին հանգիստ կանգնած էր մի բարձրահասակ, 40 տարեկան գիւղացի. դա կնկամեռ մարդ էր ու 5 մանր երեխայի տէր։

Նա սկզբից քահանայի խօսքերին ականջ էր դնում անտըրտունջ, բայց յուսահատութիւնը հետզհետէ սաստկացաւ. Վերջապէս էլ չըկարաց համբերել, դառնացած աղաղակեց.

—Ա՛յ նզովուած լինի այս պատերազմը։ Եկել էք, տէր հայր, հանգիստ կերպով մեզ մխիթարում էք, իհարկէ Ձեր փորաջին ոչ ոք մատով չի դիպչիլ, իսկ մեր մեղն ինչ է. Միթէ մեղաւո՞ր ենք, որ մեր մարդասպաններն սպանեցին նրանց մարդասպաններին։ Գայլերը պատառում են մէկ մէկու, ոչխարները պիտի գան նրանց տեղ վճարեն։ Ա՛խ, նզովեալ լինեն բոլոր այդ եղբայրասպան Կայէնները։

Ցետոյ հանդարտուելով սկսեց արտասուել ու հեկեկալ.

—Ա՜խ իմ երեխէք, խեղճ երեխէք, ինչ է լինելու ձեր վիճակը. դուք առանց հայրիկի պիտի կորչէք։

Նա նորից չարացած սրտով աղաղակեց.

—Աւելի լաւ չէ՞ որ երեխաներիս էլ ինձ հետ սպանեն. միեւնոյն է, ինձնից հտ նրանք պիտի սովամահ լինեն։ Ի՞նչ զարմանք, կարելի է որ նրանք էլ մասնակից են պարոն-գերմանների սպանութեան գործում, որոնք գազանների պէս մեր երկիրն են թափուել։ Մի՞ գուցէ իմ 3 տարեկան աղէն էլ ձեռները թաթախել է մարդկային արեան մէջ։ Եթէ այդպէս է, թող նրան էլ գնդակահար անեն։

Խորին վշտով քահանան լսում էր գիւղացու հեծկլտոցն ու հեկեկանքը. ամեն հնար գործ էր դնում նրան հանգստացնելու, բայց չէր օգնում։

Քահանան թողեց մխիթարելը, հրաժեշտ տուեց գիւղացոց և մտածմունքի մէջ ընկած քայլերը ուղղեց դէպի այն դուռը, ուր իջեւանած էր գերման սպան։

Գ.

Վաշտապետը նստած էր հողէ սաքուի վրայ և սքանչանում էր տաք աստղալից գիշերով։ Բաշում էր յախճապակէ մեծ չուբուխը և կում-կում կոնծում գարեջուրը կողքին դրած ունկնաւոր գաւաթից։

Բաղանեան սպային մօտենալով ասաց.

— Պարոն վաշտապետ, դուք կամենում էք գնդակահարել մեր վեց գիւղացոց։ Այդ մարդկանցից ոչ մինը ձեր զինուորների վրայ չի կրակել։ Այդ անող կամաւորները վաղուց անյայտացել են։ Նշանակում է՝ ձեր միտքն այն չէ, որ պատուհասէք խսկական յարձակուողներին, այլ այն է լինելու, որ սարսափ տարածէք մեր ողջ գաւառի վրայ։ Ուրեմն ձեր համար կարևոր չէ, թէ ում արճիճը գնդակի առաջ կը կանգնի։

Վաշտապետը քրքրուելով գլուխը տմբացրեց, պռունկների միջից բաց թողնելով ծխի թեթև օղակներ։

— Մինչև անգամ կարծում եմ, խօսքը շարունակեց Բաղանեան, քանի գնդակահարուողը գաւառում աւելի յայտնի անձ լինի, այնքան աւելի ահարկու կը լինի օրինակը։ Անաւասիկ ես եկել եմ ձեզնից մի շնորհ խնդրելու. իրաւունք տուէք ինձ բռնել այն գիւղացու տեղը, որ հինգ մանր զաւակների հայր է։ Թէ նա և թէ ես—երկուսս էլ այդ բանում մեղաւոր չենք, միայն թէ իմ մահը կարելի է աւելի շահաւէտ լինի ձեզ համար, որովհետև գաւառի մէջ մեծ ու փոքր ինձ ճանաչում են։

Վաշտապետը բիչ մտածելուց ետ առանց չուբուխը ատամների միջից հանելու խօսեց.

— Եթէ ձեր սիրտն այդպէս է ցանկանում, ինչո՞ւ չէ, կը փոխենք։

Մի քանի րոպէից ետ քահանային տարան դպրոց, կապեցին միւս կալանաւորների հետ, իսկ մանր երեխանց հօրն արձակեցին։

Դ.

Հետևեալ օրուայ արշալոյսին գիւղացիներին քահանայի հետ կապկապած տարան գիւղից դուրս դաշտը, ուր ամեն ինչ պատրաստ էր պատուհասելու համար. սևին էր տալիս նոր փորած հողը փոսի գլխին, գերման զինուորների ջոկատը կանգնած էր լցրած հրացանները ձեռներին։

Գիւղացիք յամրաքայլ ընթանում էին տխուր, գլխակախ, միայն քահանան էր հոգով արի մնացել ու քաջալերում էր ընկերներին։ Դատապարտեալներին մօտեցրին փոսին, նրանց դիմաց տեղ բռնեցին զինուորները. Սպասում էին միայն վաշտապետին։ Բաղանեան աղօթում էր. «Երկնաւոր Հայր, քո սիրելի և միածին որդու պէս ես անարժանս նոյնպէս աղաչում եմ—ների՛ր սրանց, որովհետև չրգիտեն թէ ինչ են գործում»։

Վաշտապետը երկար մինչ չէր երևում. կայրալը զինուոր ուղարկեց գիւղը տեղեկութիւն բերելու։ Գնացողը վազէվազ եկաւ ու դեռ հեռուից բղաւեց.

— Զօրապետն եկել է։

Զինուորները շարքով ձիգ կանգնեցին։

Վերջիվերջոյ երևաց վաշտապետը. Նրա հետ ձիու վրայ գալիս էր գերման զօրավարը բանբերները ետևից գցած։ Վաշտապետը ձեռը քունքին դրած ինչ-որ պատկառանքով ծանուցանում էր զօրապետին ձեռը մեկնելով դէպի կապկապած ֆրանսացիք։

Զօրապետն աւելի մօտ գնաց, զինուորներին ողջունեց և յետոյ ակնապիշ նայելով քահանայի վրայ վաշտապետին այնպիսի բան ասեց, որից վաշտապետի երեսը ճակնդեղի պէս կարմրեց։ Այնուամենայնիւ վաշտապետը խորին յարգանքով լսեց զօրապետի խօսքերը մինչև վերջ ու յետոյ շուռ գալով դէպի զինուորները բարձրաձայն ասեց.

— Հանեցէք փամփուշտները. Նորին գերազանցութիւնը բարեհաճեց ներել այս բոլոր մարդկանց իրանց քահանայի պատճառով։ Արձակեցէք նրանց թևերը։

Զօրապետը հիացմամբ կրկին նայեց քահանայի վրայ, ձեռի շարժումով հրաժեշտ տուեց վաշտապետին և ձիու գլուխը թեքելով հեռացաւ։

Այդ ժամանակ բարկութիւնից կրակ կտրած վաշտապետը բղաւեց.

— Դէ, շուտ արձակեցէք դրանց կապերը, կորչեն, գնան։

Երբ ազատուած քահանան անցնում էր վաշտապետի կողքով, սա ծաղրանքով գլուխ տուեց քահանային և ասեց.

— Շնորհաւորում եմ ձեզ։

Բաղանեան կանգ առաւ ու հեզօրէն նրան պատասխանեց.

— Իսկ ես շնորհաւորում եմ ձեր զինուորներին։

Վաշտապետը զարմանքով հարցրեց.

— Այսինքն ինչպէս, դու ինչո՞ւ համար ես շնորհաւորում։

— Ես նրա համար եմ շնորհաւորում, խօսեց քահանան, որ զինուորները ազատուեցին մի աւելորդ անգամ սպանելուց մարդկանց, մեզ—իրանց եղբայրներին։

Վաշտապետը զայրոյթից կապտելով շուռ եկաւ ու գնաց։

(Թարգմ.) Բ. Ս.

---

# Մամուլ

Հայաստէր մամուլ։ Հայոց կոտորածները ցնցեցին զաշնակից և չէզոք երկրների մամուլին, հասարակական, եկեղեցական և պետական գործիչներին։ Ամեն կողմից լսուեցին համակրական խօսքեր հայ ժողովրդի հասցէին։

Կուլտուրական երկրների մամուլը յաճախակի լոյս տեսնող յօդուածների միջոցաւ ընթերցող հասարակութեանը ծանօթացնում է հայկական կեանքին և գործերին։ Բայց այդ դեռ բաւական չէ, զանազան տեղեր հայասէրների ջանքերով սկսեցին լոյս տեսնել հայոց դատին նուիրուած պարբերական հրատարակութիւններ. օր. Ամերկայում այժմ լոյս է տեսնում «The New Armenia» և «Ararat» Անգլիայում, Իտալիայում՝ «Armenia», Ռումինիայում՝ «Armenia *) Antonoma», իսկ Ռուսաստանում «Армянскій Вѣстникъ»։ Հայոց հարցը գոնէ մինչև պատերազմի վախճանը պէտք է վառ պահել եւրոպական հասարակութեան մէջ, իսկ այդ նպատակին հասնել կարելի է մանաւանդ պարբերական հրատարակութիւններ օգնութեամբ։

—

Այս ընդհանուր շարժումից անմասն չմնաց նաև լեհ ժողովուրդը։ Մոսկուայում լոյս տեսնող «Fcho Polskie» շաբաթաթերթի վերջին համարը համարեա ամբողջովին նուիրուած է հայ ժողովրդին. շապիկի վրայ տպած է «numer armianski»։ Համարի առաջնորդողը պատկանում է Լեդնիցկու գրչին։ Յօդուածներ ունեն Զիվիլիգեան «Էրզրում և Մուշ», լեհական յայտնի հրապարակախօս Կ. Էրենբերգ՝ «XXV դար կռիւ ազատութեան համար», պատմաբան Եակուբովսկի՝ «Լեհական հայերը», Պուլովսկի՝ «Հայկական ժողովրդական երգեր», Տ. Միցենսկի՝ «Անահիտի սէրը»։ Հայոց կեանքից կան տպուած հետևեալ պատկերները՝ Գէորգ V կաթ., Րաֆֆի, Անդրանիկ, Էջմիածին, հայ գաղթականներ, խաչքարեր, հայ արհեստաւորների խանութներ։ Շաբաթաթերթի արտաքինն ու ներքինը լաւ տպաւորութիւն են թողնում։

Ա. Լեդնիցկու առաջնորդողի մէջ կարդում ենք հետևեալը պատմական մի ընդհանուր ակնարկից յետոյ.

«Հայաստանը կորցրեց իր ազատութիւնը, ազնուականու-

---

*) Ռումինիայում առաջին անգամ 1880—81 թուականներին Թորէն Եպիսկոպոս Ստեփանէի ջանքերի շնորհիւ յանձն է առնում մի ֆրանսերէն թերթ—որի անունը դժբախտաբար չենք յիշում—հայոց հարցը առանձնապէս պաշտպանելու։ Խմբագր.

թիւնը, քաղքենութիւնը, մնաց միմիայն հասարակ ժողովուրդը, բայց և այնպէս ազգը չ'ոչնչացաւ։

Ճնշուած պատմական անլուր աղէտների ծանրութեամբ, հայ ժողովուրդը պատրաստ է ամէն վայրկեան բարձրանալու և իր առնական ձեռքը տարածելու դէպի ազատութեան բախտը»։

Այնուհետև նկարագրում է հայ ժողովրդի վերջին դառնութիւններն և այժմեան տանջանքներն ու իր յօդուածը վերջացնում հետևեալ խօսքերով.

«Չը կործանուեց հայ ժողովուրդը. Նա իր տանջանքների խաչը տանում է մեծ արիութեամբ և տոկունութեամբ։ Լեհ ժողովուրդը չի կարող սառնասրտութեամբ անցնել այս ժողովրդի սարսափելի ողբերգական պատմութեան կողքից, որն իր ընդունակութիւնների և ազնւութիւնների գեղեցիկ գոյնը մուծեց մեր կուլտուրայի մէջ, մի ժողովուրդ, որը գաղթելով մեր Լեհական հողը՝ տուեց հայրենասէր և անձնազոհ անձինք։ Եւ մենք ցանկանում ենք տեսնել այս ժողովրդի ազատագրութեան արշալոյսը, որը շնորհիւ իր հին կուլտուրայի՝ լիակատար իրաւունք ունի անկախ կեանքի»։

Պակաս հետաքրքրական չէ լեհական հայերի մասին գրած Եակուբովսկու յօդուածը, ուր ի միջի այլոց ասում է.

«Լեհական հայերը դարեր շարունակ մեր ժողովրդի կեանքում նշանակալից դեր խաղացին։ Երկար ժամանակ նրանք այն օղակն էին, որը կապում էր հին Լեհաստանը Արևելքի հետ»։

Այնուհետև հեղինակը նկարագրում է, թէ ինչպէս հայերը Լեհաստանի վրայօք Արևելքի և Արևմուտքի վաճառականութիւնը կապում էին իրար հետ, ինչպէս Լեհ պետութիւնը օգտւում էր հայերից իր դիպլոմատական և պատերազմական նպատակների համար։

«Ստամբուլի լեհական ոչ մի դեսպանութիւն գլուխ չէր կարող հանել առանց հայերի»։

Այս կապող հանգամանքը և պատմական նման ճակատագիրն ուժեղացնում է լեհերի դէպի հայերն ունեցած համակրանքը։

—

Հայկական կեանքով պակաս հետաքրքրութիւն ցոյց չըտուեց Հոլանդացոց մամուլը, որի մի քանի աչքի ընկնող թերթեր յարձակւում են Գերմանիայի վրայ, որ թոյլ տուեց թուրքական գազանութիւնները։ Այդ թերթերը յայտնում են, որ հայ ժողովուրդը զոհ է արևմտեան կուլտուրական այն իդէալների, որոնց համար նա միշտ էլ հալածանքի է ենթարկուել թէ անցեալում և թէ ներկայում։

Հոլանդիայի թերթերից «Telegraf»-ի կարծիքով հայոց դատն այն ժամանակ բարեյաջող ելք կ'ընդունի, երբ յարգուին հայ ժողովրդի «պատմական իրաւունքները»։

—

Մարսէյլում լոյս տեսնող «Արմենիա»-ի վերջին համարում Պարիզից գրուած մի թղթակցութիւն է տպուած, ուր համառօտակի նկարագրում է Օրլէանի յայտնի եպ. Տուշէի հայկական կոտորածների մասին արտասանած բանախօսութիւնը։ Այդ յօդուածի մէջ բերուած է եպիսկոպոսի բանախօսութեան վերջաբանը, որը ուղղուած է դիպլոմատներին.

«Աղաչում եմ Ձեզ, երբ զինուորներն իրանց այսօրուան գրաւած աթոռները ձեզ թողնեն, Հայաստանը թուրքերի ձեռքից առնէք։ Հակառակ պարագային, եթէ այս թշուառ ժողովրդի մնացած մասը անիշխանական դառնայ և եթէ ուժով կործանեն ամբողջ Պոլիսը, ես, եպիսկոպոսս, չեմ վախենալ Քրիստոսի խորանի առջև յայտարարելու, թէ նրանց արարքն արդարացի է լինելու և նոյն իսկ համաձայն Աստուածային օրէնքներին»։

* * *

Դեռ պատերազմից շատ առաջ քանի-քանի անգամ արծարծուել է ռուսերէն լեզուով հայ ժողովրդի ցաւերն ու կարիքները ռուս ժողովրդին ներկայացնող մի օրգանի անհրաժեշտութեան խնդիրը։

Համաշխարհային պատերազմի ընթացքում, երբ հայկական հարցը նոր թափով առաջ եկաւ, ռուսերէն լեզուով հայկական օրգանի խնդիրն աւելի ևս զգալի դարձաւ, մանաւանդ որ ռուս հասարակութիւնը սկսեց աւելի հետաքրքրուել հայկական հարցով, քան երբ և է։

Ահա և այս կարիքներին բաւարարութիւն տալու համար այս տարուանից Մոսկուայում սկսել է հրատարակուել մի շաբաթաթերթ «Армянскій Вѣстникъ» անունով։

Այդ շաբաթաթերթին մասնակցում են հայ և ռուս գրականագէտներ. ռուսներից, ի միջի այլոց, մասնակցում են՝ Բալմոնտ, Վ. Բրիւսով, Բունին, Վեսելովսկի, Գորոդեցկի, Կիզեվետեր, Կովալևսկի, Միլիւկով, Նովգորոդցև, Ռոդիչև, Սոլոգուբ, Շենգարեով և շատ ուրիշները։

Շաբաթաթերթը իր հանդէս գալը հետևեալ կերպ է պատճառաբանում.

«Ռուս հասարակութեան լայն խաւերը մինչև այժմ շատ քիչ են ճանաչում հայերին, նրանց անցեալը, նրանց կուլտուրան. ռուսերէն լեզուով մի օրգան չըկայ, որը նուիրուած լինի հայկական հասարակական-քաղաքական և ազգային կեանքի լուսաբանութեանը, որն իր մէջ ցոլացնի հայերի կարիքները։ Այդպիսի օրգանի կարիք զգացւում էր առաջներն էլ, սակայն ոչ մի անգամ այնպիսի անհրաժեշտութիւն չէ ներկայացրել, ինչպէս այժմ։ Հայ ժողովուրդը ոչ մի անգամ այնպէս չի զգացել ռուս հասարակական կարծիքի պաշտպանութեան կարիքը, ինչպէս այժմ»։

Армянскій Вѣстникъ-ը գալիս է այդ բացը լրացնելու։ Նա ցանկանում է, որ ռուս հասարակութիւնը իր միջոցով ոչ միայն կարեկից լինի հայ ժողովրդին, այլ և նիւթապէս և բարոյապէս օգնական։ Շաբաթաթերթը զբաղուելու է նաև հայկական արտասահմանեան գաղութների կեանքով։

Մինչև այժմ լոյս տեսած համարները ցոյց են տալիս, որ գործը տարւում է լաւ։ Լիակատար յաջողութիւն ենք ցանկանում այս օրգանին։ Ապագայում առիթներ կունենանք աւելի մօտ ծանօթանալու շաբաթաթերթի հետ։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## ՑՈՒՑԱԿ

### ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐԻ, ՈՐՈՆՔ ՊԱԿԱՍՈՒՄ ԵՆ Կ. Հ. Բ. ԸՆԿ. ԳՐԱԴԱՐԱՆՈՒՄ

*1. Արարատ ամսագիր 1871 թ. №№7—12, 1889 թ. № 12, 1894 թ. № 9—12. 2. Արևելեան մամուլ (Զմիւռնիա) 1874 թ., 1875, 1876 թ. №№ 11, 12, 1877, 1878 թ. 5-12, 1879 թ. 8-12, 1880, 1881, 1882, 1883 թ. 4-12, 1884, 1885 6-12, 1886-1897 1898 9-12, 1899—1905, 3. Ազգագրական հանդէս (Թիֆ.) 1903—09թ. 4. Աղբիւր (Թիֆլիս) 1883 թ. (7-10-12), 1886 թ., 1901 թ. (10—12), 1904-1909 թ., 5. Արծիւ Վասպուրականի (Վարագ) 1860 (1, 3-12) 1861 (1-3, 5-12) 1862 (4-12) 6, Արձագանք (Թիֆլիս) 1885թ. 1889, 7. Անահիտ (Պարիզ) 1899—1908թ, 1909 (9-12) 1910 (11-12) 1911—1914թ. 8. Արաքս (Պետրոգրադ) 1887 (№ 2) 1888 (№1), 1889 (№ 2), 1890 (№2), 1891թ. 1894 (№2) 1895—1897 1898 (№2) 1899—վերջը. 9. Արշալոյս Արարատեան 1845 թ. 1854 1856, 10. Աւետաբեր 1875—1908. 11. Առողջապահական թերթ, (Երևան) 1881 (6-12), 1882 (1, 4-12), 1884-ից յետոյ. 12. Արօր ամսագիր (Թիֆլիս) 1912 (1, 3-12). 13. Բազմավէպ (Վենետիկ) 1902 թ. 1909 թ. 14. Գեղունի (Վենետիկ) 1907, 1908 թ. 1910 1911, 1912, 15, Գիւղատնտես շաբաթ. (Թիֆլիս) 1910 թ. 1912, 16. Գիտութիւն ամսագիր (Լոզան) 1903 թ. (№ 1). 17. Երևակ շաբ. (Կ. Պոլիս) №№ 1-12, 14-67, 69-77, 79-85, 87-91, 93-94, 98-108, 110, 111, 112. 18. Դպրոց մանկ. ամս. (Վաղարշ.) 1874 (№ 1, 2, 6-12) 1877 թ. 1879 (1-12). 19. Եւրոպա (Վիեննա) 1848, 1850, 1857, 1858, 20. Թատրոն (Թիֆլիս) 1896, 1897, 1898, 21. Կռունկ (Թիֆլիս) 1866 թ. 22. Հիւսիսափայլ (Մոսկուա) 1863 թ. (1-11) 23. Հովիւ (Թիֆլիս) 1908 թ. 24. Հանդէս գրական և պատմական (1, 2) 25. Համբաւաբեր (Մոսկուա) (№№ 12, 13, 14, 16, 17), 26. Հանդէս ամսօրեայ 1900—1908 թ. 27. Մանկավարժանոց բոլորը բացի 1883, 1884 թ. 28. Մասիս 1853—1863, 1866-1884, 1888-1893. 29. Մասեաց Աղաւնի (Թէոդոսիա) 1859 թ. 1864 թ. 30. Մեղու Հայաստանի (Թիֆլիս) 1863 թ. 1867-1876 թ. 1884 թ. 31. Մշակ օրաթ. (Թիֆլիս) 1876. 1877, 1885 թ 1904-1909, 32. Նոր-Դար օր. (Թիֆլիս) 1886, 1889, 1890, 1894, 1898, 33. Նոր-դպրոց (Թիֆլիս) մինչև 1909 թ. 1911 թ. (5-12). 34. Տարազ (Թիֆլիս) 1891-1894, 1901, 1902, թ. 1906-1909 թ. 35. Սէր №№ 1—4, 10, 15, 16, 36. Վարժարան 1882 թ. (6-12), 1883 (11, 12) 1884 թ. (1-2, 11, 12)*

*Վերոյիշեալ պարբերական հրատարակութիւններից ունեցողներին խնդրում ենք վաճառել կամ նուիրել գրադարանին։ Հասցէն՝* Тифлисъ, Абасъ-Абадская пл, д. № 7. Библіотека-читальня Кавк. Армян. Благотв. О-ва.



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի   Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1   Дозволено военнной цензурой

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 14

# „ՀԱՄԲԱՎԱԲԵՐ“-ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ԱՊԱՍՏԱՐԱՆՆԵՐԻ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

I, II, III և IV բաժանմունքների Բագուի Հայոց Գաղութի

Առ 1-ն յունուարի 1916 թ.

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծնող ունի մայր կամ հայր | Ծնողների տեղը | Գրագետ է | ԾԱՆՈԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Ալմաստեան Փայլածու | Դաշտ | 11 | ունի | Էջմիածին | | |
| 2 | Աղաջանեան Անդրանիկ | Շատախ | 9 | — | — | | |
| 3 | Ադադադեան Սդանի | Կուրուբաշ | 7 | ունի | Թիֆլիս | | |
| 4 | Ամիրխանեան Հռիփսիմէ | Խեկա | 12 | մայր | Էջմիածին | | |
| 5 | » Մարիամ | — | 13 | — | — | | |
| 6 | Ալանեան Աղանի | Խնձորկեն | 7 | ունի | Երևան | | |
| 7 | » Ազնիւ | Խնձորիկ | 13 | չունի | — | | |
| 8 | » Հռիփսիմէ | Տօնիկ | 11 | — | — | | |
| 9 | » Եղսօ | Հերեց | 10 | չունի | — | | |
| 10 | Աւետիսեան Սուրէն | Արճակ | 12 | ունի | Բագու | | |
| 11 | » Միհրան | Կզզի | 10 | մայր | Երևան | | |
| 12 | » Հայրիկ | Արճակ | 11 | — | — | | |
| 13 | » Գրիգոր | Կուրուբաշ | 15 | — | Էջմիածին | | |
| 14 | » Ցամիկ | Նարեկ | 8 | ունի | — | | |
| 15 | Արմենեան Էլիզա | Վան | 7 | — | — | | |
| 16 | Արաբերեան Մարգարիտ | » | 11 | չունի | — | | |
| 17 | Անդրանիկեան Ազնիւ | Անթափ | 8 | — | — | | |
| 18 | Աղայեան Տիգրան | Վան | 6 | — | — | | |
| 19 | Արշակեան Փամփուս | Խասանց | 4 | չունի | — | | |
| 20 | Բալամադեան Արգար | Վան | 8 | չունի | — | | |
| 21 | » Արաքսի | » | 12 | — | — | | |
| 22 | Բաղդասարեան Բաղդասար | Նորգիւղ | 13 | հայր | Կամաւոր է | | |
| 23 | » Ցարութիւն | — | 4 | մայր | Էջմիածին | | |
| 24 | Բարսեղեան Ունան | Մոխրաբերդ | 14 | մայր | Բագու | | |
| 25 | » Վարդգէս | — | 10 | — | — | | |
| 26 | » Արամ | — | 8 | — | — | | |
| 27 | Բէգզադեան Թանգիկ | Բելուա | 12 | չունի | — | | |
| 28 | Գէորգեան Զարուհի | Գանձակ | 10 | — | — | | |
| 29 | » Սամուէլ | Հալս | 10 | հայր | — | | |
| 30 | » Վարդանուշ | Վան | 10 | — | — | | |
| 31 | Գրիգորեան Թոռէ | Ծկոր | 11 | մայր | Էջմիածին | | |
| 32 | » Շողիկ | » | 12 | » | — | | |
| 33 | » Հռիփսիմէ | Նարեկ | 14 | » | Բագու | | |
| 34 | » Սահակ | » | 12 | » | — | | |
| 35 | » Սերովբէ | Խորգոմ | 12 | չունի | — | | |
| 36 | » Գրիգոր | » | 10 | հայր | Ամերիկա | | |
| 37 | Գաբրիէլեան Սեդրակ | Պստիգեղ | 12 | մայր | Էջմիածին | | |
| 38 | » Սանդուխտ | » | 13 | » | — | | |
| 39 | » Սասուն | » | 12 | » | — | | |
| 40 | » Փարեղամ | Խորգոմ | 14 | հայր | — | | |
| 41 | » Վայրէջ | » | 10 | չունի | — | | |
| 42 | Դաւոյեան Մովսէս | Խժիժկ | 13 | » | — | | |
| 43 | Դանոյեան Մինաս | Աւանց | 3 | հայր | — | | |
| 44 | Դաւթեան Հրանտ | Դաշտ | 13 | չունի | — | | |
| 45 | » Դաւիթ | » | 14 | » | — | | |
| 46 | » Նուպար | Նիրիշայ | 12 | չունի | — | | |
| 47 | Դանդոյեան Սասուն | Նարեկ | 17 | » | — | | |
| 48 | Եդոյեան Իսկուհի | Վան | 6 | ունի | — | | |
| 49 | Եղիազարեան Սիրան | Կուրուբաշ | 14 | » | Էջմիածին | | |
| 50 | Զատէյան Մանուկ | Կզզի | 13 | » | — | | |
| 51 | » Ալթօ | » | 10 | » | — | | |
| 52 | » Զաքար | » | 10 | » | — | | |
| 53 | » Յովակիմ | » | 15 | մայր | Էջմիածին | | |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 54 | Զաւոյեան Սիրուն | Բեյրութ | 10 | հայր | — |
| 55 | Զաքարեան Զարզար | Խառակոնիս | 12 | մայր | Էջմիածին |
| 56 | Էդոյեան Անդրանիկ | — | 14 | մայր | — |
| 57 | Թամոյեան Վարդանուշ | Թիմար | 12 | ունի | » |
| 58 | » Շամիրամ | Խժիժկ | 5 | - - | » |
| 59 | Թորգուլեան Սարգիս | Վան | 10 | հայր | — |
| 60 | Թորոսեան Սալամ | Նարեկ | 12 | մայր | Բաթում գ. |
| 61 | Թովմասեան Գրիգոր | Աշորն | 9 | » | Էջմիածին |
| 62 | » Ազնիւ | » | 12 | » | » |
| 63 | » Զարեհ | Խժիժկ | 10 | ունի | » |
| 64 | » Թանգիկ | Մոկս | 12 | չունի | — |
| 65 | Թաղէոսեան Հայկանուշ | Խորգոմ | 10 | մայր | Էջմիածին |
| 66 | Թարգուլեան Վարդանուշ | Վան | 10 | հայր | » |
| 67 | Թովմասեան Լուսնթագ | Աւերակ | 6 | չունի | — |
| 68 | Լեռնեան Գուրգէն | — | 6 | — | — |
| 69 | Խաչոյեան Սահիան | Ագանձա | 13 | հայր | Բագու |
| 70 | » Մովսէս | Թիմար | 10 | չունի | — |
| 71 | Խէչոյեան Միսակ | Խնուս | 14 | մայր | — |
| 72 | » Թադէոս | Վան | 7 | հայր | Ամերիկա |
| 73 | Խաչատրեան Հրաչեա | Կղզի | 12 | չունի | — |
| 74 | » Վարսենիկ | » | 7 | » | — |
| 75 | » Խաչատուր | Խորգոմ | 11 | մայր | — |
| 76 | » Արաքսի | Վան | 13 | հայր | Երևան |
| 77 | » Շուշանիկ | » | 10 | » | » |
| 78 | » Մայրիկ | Խորգոմ | 12 | մայր | Էջմիածին |
| 79 | » Նոյան | Խլաթ | 10 | չունի | — |
| 80 | » Վաներ | Բերծ | 8 | չունի | — |
| 81 | Խաչիկեան Սեպուհ | Եղեգի | 7 | » | » |
| 82 | Խլոյեան Գէորգ | — | 12 | » | » |
| 83 | Խոչայեան Միսակ | Կղզի | 12 | » | Երևան |
| 84 | Կիւրոյեան Արուսեակ | Նորշէն | 10 | » | » |
| 85 | Կապոտեան Վարդեր | Իրիշ | 7 | հայր | Կամաւոր |
| 86 | Կարապետեան Գայուստ | Վան | 6 | մայր | Բագու |
| 87 | » Կարապետ | Դշխոյ | 10 | չունի | — |
| 88 | » Սամուէլ | Վան | 14 | » | — |
| 89 | » Երան | Լամզկերտ | 11 | » | — |
| 90 | » Եղիսաբեթ | » | 14 | » | — |
| 91 | Կոկոսեան Արամ | Նորգեղ | 13 | » | — |
| 92 | Կորիկեան Մանուկ | Մոկս | 13 | » | — |
| 93 | » Ազնիւ | Վան | 11 | » | — |
| 94 | Կանաչեան Եղիշէ | Կարճկան | 12 | » | — |
| 95 | Կարուղեան Արտաշէս | Վան | 14 | » | — |
| 96 | Կիրակոսեան Անթառամ | Արգոնք | 14 | » | — |
| 97 | » Սօսէ | » | 8 | » | — |
| 98 | » Սամսոն | » | 10 | » | — |
| 99 | Կուկունեան Արաքսի | Վան | 9 | հայր | Բագու |
| 100 | Համբարձումեան Ազամիր | Բաշկալա | 12 | մայր | Էջմիածին |
| 101 | » Եղիսաբեթ | — | 5 | հայր | — |
| 102 | Հայկազեան Վարդանուշ | Վան | 10 | — | — |
| 103 | Հայրապետեան Գրիգոր | Նորգեղ | 12 | ունի | Էջմիածին |
| 104 | Հիազեան Բերկրուհի | — | 6 | » | — |
| 105 | Ղազարեան Բլօ | Խլաթ | 11 | մայր | Էջմիածին |
| 106 | » Սաթենիկ | » | 10 | » | » |
| 107 | » Տիգրան | Սպարկերտ | 10 | մայր | — |
| 108 | Ղարիբեան Վարդան | Վան | 7 | » | Բագու |
| 109 | Մարգարեան Միլոն | Մարմէտ | 12 | չունի | — |
| 110 | » Մարգար | Նորգեղ | 13 | մայր | Բագու |
| 111 | » Բայրան | Խեկ | 10 | » | Էջմիածին |
| 112 | Մուրադեան Ղազար | Խորգոմ | 10 | ունի | » |
| 113 | » Պետրոս | Մոկս | 14 | մայր | » |
| 114 | » Յովհաննէս | » | 12 | » | » |
| 115 | » Սմբատ | Գանձակ | 12 | » | » |
| 116 | » Ազատ | Անտափավան | 6 | չունի | — |
| 117 | » Երան | Փարախ | 7 | » | — |
| 118 | » Հայկանուշ | » | 12 | » | — |
| 119 | » Վարդան | Աստուածաշէն | 11 | » | — |
| 120 | » Անդրանիկ | Ագանձա | 12 | » | — |
| 121 | » Յովհաննէս | Բերծ | 8 | » | — |
| 122 | Մանուկեան Սիմոն | Վան | 12 | » | — |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 123 | Մանուկեան Սիրանուշ | — | 12 | մայր | Էջմիածին | |
| 124 | » Վարդան | Ոզմ | 9 | չունի | — | |
| 125 | Մանուկեան Սաթիա | Վան | 12 | » | — | |
| 126 | » Մանուկ | Թիւրքաշէն | 12 | հայր | Կամաւոր | |
| 127 | » Եղիշէ | Խոյ | 8 | չունի | — | |
| 128 | » Գրիգոր | Վան | 6 | ունի | Բագու | |
| 129 | Մոկսեան Պօղոս | Նորգեղ | 14 | » | Էջմիածին | |
| 130 | Միրխանեան Միրիճան | Մաշտոց | 14 | մայր | » | |
| 131 | » Գարեգին | » | 12 | » | » | |
| 132 | Մկրտչեան Ղազար | Կոճերա | 12 | » | » | |
| 133 | Մխիթարեան Սարգիս | Դշխուն | 10 | » | Թիֆլիս | |
| 134 | » Յակոբ | Նորգիւղ | 11 | » | Էջմիածին | |
| 135 | Մարկոսեան Փայլուն | Վան | 14 | » | Թիֆլիս | |
| 136 | » Սիրուն | » | 13 | չունի | — | |
| 137 | Մխոյեան Նինէ | Հարգօզան | 12 | չունի | — | |
| 138 | Մինասեան Միհրան | Էրմանց | 7 | ունի | Էրմանց | |
| 139 | Միրաքեան Աւետիս | Հնգարան | 14 | » | — | |
| 140 | Մալխասեան Վարսենիկ | Աւանց | 11 | » | » | |
| 141 | » Արծրունի | » | 5 | » | » | |
| 142 | Մահտ.-Մուրադեան Անթառամ | — | 12 | մայր | Էջմիածին | |
| 143 | » Արամ | Ջոկու | 13 | » | » | |
| 144 | Միրզոյեան Արտաշէս | Նորգեղ | 13 | ունի | » | |
| 145 | Մելքոնեան Ստեփան | Ալճաւազ | 10 | չունի | — | |
| 146 | » Պայծառ | » | 11 | » | — | |
| 147 | Մկոյեան Կոզալ | Հիրիչ | 11 | » | — | |
| 148 | Մանկասեան Լուսաբեր | Շատախ | 13 | » | — | |
| 149 | Մամիկոնեան Սիրուն | Գոլու | 6 | ունի | Երևան | |
| 150 | Մարտիրոսեան Մնացական | Խժիժ | 12 | մայր | Էջմիածին | |
| 151 | Յովսէփեան Սիրվարդ | Վան | 9 | չունի | — | |
| 152 | » Վարդգէս | — | 6 | մայր | — | |
| 153 | » Շամոմ | Կոօ | 7 | հայր | — | |
| 154 | Յակոբեան Հայրիկ | Վան | 15 | չունի | — | |
| 155 | Յակոբեան Աղնիւ | Կոր | 4 | ունի | — | |
| 156 | » Յակոբ | Խիզան | 7 | » | — | |
| 157 | » Փիլիպոս | » | 14 | » | — | |
| 158 | » Ռունան | Եղիկ | 11 | հայր | Էջմիածին | |
| 159 | » Յովսէփ | Մաշտոց | 12 | » | » | |
| 160 | » Աշոտ | » | 11 | » | » | |
| 161 | » Յովհաննէս | Եղիգեց | 12 | չունի | — | |
| 162 | » Շուշանիկ | Վան | 5 | » | — | |
| 163 | Յարութիւնեան Մանուկ | Խառանկոնիս | 8 | ունի | Բագու | |
| 164 | » Համազասպ | Նարեկ | 13 | » | Բաթում | |
| 165 | » Սիրանուշ | » | 11 | » | Երևան | |
| 166 | » Մարգարիտ | Աւերակ | 10 | չունի | — | |
| 167 | » Փայլածու | Խժիժ | 11 | մայր | Էջմիածին | |
| 168 | Յովհաննիսեան Մովսէս | Հնձակ | 14 | մայր | Էջմիածին | |
| 169 | » Յարութիւն | Խորգոմ | 9 | չունի | — | |
| 170 | » Վարդան | Գանձակ | 13 | չունի | — | |
| 171 | Յախէփեան Մուրադ | Որորան | 12 | » | — | |
| 172 | Նշանեան Յաբէթ | Վան | 10 | հայր | Կամաւոր | |
| 173 | Նոխոյեան Առաքել | Նորգիւղ | 12 | չունի | — | |
| 174 | Նազէյեան Աթլաս | Խլաթ | 10 | » | — | |
| 175 | Շիրոյեան Յովհաննէս | Վան | 12 | » | — | |
| 176 | Շաւելեան Արաքսի | Կուտուբաշ | 12 | ունի | Էջմիածին | |
| 177 | » Հռիփսիմէ | » | 9 | » | » | |
| 178 | Շահինեան Շամոմ | Նարեկ | 12 | մայր | » | |
| 179 | » Աղաւնիկ | » | 14 | » | » | |
| 180 | Շահնազարեան Արամ | Արդանց | 13 | հայր | » | |
| 181 | Շարոյեան Աղբինէ | Առանց | 9 | չունի | — | |
| 182 | Ոսկոյեան Նուպար | Վան | 12 | — | — | |
| 183 | Չիչեանց Վարսենիկ | Վան | 10 | ունի | — | |
| 184 | » Շուշանիկ | » | 7 | » | — | |
| 185 | Չիթեան Աստղիկ | » | 9 | հայր | Իգդիր | |
| 186 | » Վարսենիկ | » | 5 | — | » | |
| 187 | Չիրոյեան Սաթենիկ | Կուտուբաշ | 8 | ունի | Էջմիածին | |
| 188 | Պետրոսեան Գաբրիէլ | » | 10 | մայր | Էջմիածին | |
| 189 | » Դեղձու | Գանձակ | 10 | ունի | — | |
| 190 | » Սիրանուշ | — | 4 | — | — | |
| 191 | » Սրբուհի | Աւանց | 12 | չունի | — | |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 192 | Պետրոսեան Մարիամ | Գանձակ | 8 | ունի | էջմիածին |
| 193 | » Թագուհի | — | 14 | չունի | — |
| 194 | » Սասուն | Եղեգի | 14 | հայր | էջմիածին |
| 195 | Պաղդասարեան Արմենուհի | Կիւրիպաշ | 10 | ունի | » |
| 196 | » Շուշանիկ | Վան | 12 | մայր | — |
| 197 | Պապիկեան Մարգարիտ | Զառանց | 10 | չունի | — |
| 198 | Պարոնիկեան Պարոնիկ | Խոռգոմ | 10 | ունի | — |
| 199 | Պօղոսեան Սալամ | Ծկոր | 11 | մայր | Գանձակ |
| 200 | Ջոլոյեան Մարգարիտ | Բերդ | 6 | — | — |
| 201 | Սարգսեան Ազնիւ | Եարկուջաղ | 7 | չունի | — |
| 202 | Սիմոնեան Ռուբէն | Արդոս | 6 | չունի | — |
| 203 | Սարգսեան Ենոք | Շատախ | 10 | » | էջմիածին |
| 204 | » Լուսնթագ | Վան | 12 | չունի | — |
| 205 | » Փոքան | Նորգիւղ | 13 | » | — |
| 206 | » Գրիգոր | Արճէշ | 6 | » | — |
| 207 | Ստեփանեան Նուարդ | Գաւաշ | 7 | » | — |
| 208 | Սեդրակեան Պայծառ | Կոճեր | 14 | » | — |
| 209 | » Յովսէփ | Վանք | 9 | » | — |
| 210 | » Առուստամ | » | 7 | » | — |
| 211 | Սեոյեան Սարգիս | Կզզի | 12 | մայր | էջմիածին |
| 212 | Սահակեան Գրիգոր | » | 12 | » | Երեւան |
| 213 | » Ջանազան | » | 11 | » | » |
| 214 | » Անուշ | Վան | 13 | հայր | էջմիածին |
| 215 | » Աղասի | » | 6 | — | » |
| 216 | » Թագուհի | » | 8 | — | » |
| 217 | » Վահան | Արճէշ | 8 | չունի | — |
| 218 | » Զինար | Բիաբաբէկ | 12 | ունի | էջմիածին |
| 219 | Սափորեան Փայլակ | Վան | 9 | չունի | — |
| 220 | Սմբատեան Եղիսաբեթ | Էլխա | 7 | » | — |
| 221 | Սալախեան Սիրվարդ | Վան | 11 | » | — |
| 222 | Սարգիսեան Մուշեղ | Նորգիւղ | 9 | հայր | » |
| 223 | » Սարգիս | Վան | 13 | չունի | — |
| 224 | » Վերգինէ | » | 10 | » | — |
| 225 | » Աղաւնի | Շատախ | 15 | մայր | էջմիածին |
| 226 | Սիմոնեան Նշան | Մանթան | 8 | չունի | — |
| 227 | Վարդանեան Արշալոյս | Աւանց | 5 | չունի | — |
| 228 | » Սերովբէ | Աւանց | 4 | » | — |
| 229 | » Սերովբէ | Մուշ | 14 | մայր | Ալէքսան-դրապոլ |
| 230 | » Ալմաստ | Խեկ | 12 | հայր | էջմիածին |
| 231 | » Արմենակ | Խառակոնիս | 10 | չունի | — |
| 232 | Տէրտէրեան Սիրանուշ | Ագէր | 6 | ունի | էջմիածին |
| 233 | » Փայլուն | Առանց | 4 | » | Երեւան |
| 234 | Տանձեան Աւետիս | Վան | 8 | » | Բագու |
| 235 | Տէր-Սահակեան Անուշաւան | Ղարաքիլիսա | 11 | մայր | էջմիածին |
| 236 | Տէր-Մկրտչեան Արամ | Հնձակ | 9 | հայր | Բագու |
| 237 | » Հայկանուշ | Ագար | 12 | ունի | էջմիածին |
| 238 | Տէր-Պետրոսեան Արշալոյս | Աւանց | 10 | չուի | |
| 239 | » Սիրանուշ | » | 11 | » | — |
| 240 | Տօնոյեան Նարգիզ | Խոլիկ | 13 | » | — |
| 241 | » Աբրահամ | » | 10 | » | — |
| 242 | Փոխանեան Կաչօ | Գաւաշ | 10 | ունի | էջմիածին |
| 243 | Փանոսեան Յովհաննէս | Սխկա | 13 | հայր | » |
| 244 | » Սեդրակ | » | 12 | » | » |
| 245 | » Սիրանուշ | Բօղ | 5 | ունի | » |
| 246 | Օհանեան Գեղանոյշ | Շուշանց | 7 | ունի | — |
| 247 | » Եղիսաբէթ | Վան | 14 | չունի | — |